

# ՕԳՆԵՑԵ՛Ք ՆՐԱՆՑ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Դաշտ ու հովիտ ձյուն է բռնել,
Հողմն է միայն անհոգ սուրում
Ու մռնում անտառ,
Արոտների պղտոր մուժում
Քաղցում են ու անվերջ մրսում
Ճնճղուկ ու կաքավ:

Ցուրտն է սեղմում ամեն կողմից,
Կուչ են գալիս ճերմակ հողմից,
Անտուն ու քաղցած.
Տաք գարունն էլ հեռու է դեռ,
Իմ պատանի՛ բարեկամներ,
Օգնեցե՛ք նրանց:

Կանցնեն մի օր ձյունն ու քամին,
Վար կնայի արևն էլի
Երկնքի ծովից,
Եվ ձեզ համար հանդ ու արտում
Կերգեն հազար հավք ու թռչուն
Ձայներով թովիչ:

Սակայն հիմա ցրտից ու հողմից
Ձեզ են գալիս ամեն կողմից
Անտուն ու քաղցած.
Տաք գարունն էլ հեռու է դեռ,
Իմ պատանի՛ բարեկամներ,
Օգնեցե՛ք նրանց:

Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ

Մայրիկին դպրոց էին կանչել ժամը երեքին: Ես պայմանավորվել էի տղաների հետ սահադաշտում հանդիպել ժամը հինգին: Գիտեի, մեր դասղեկը՝ Լիդիա Վասիլևնան, ինչպես միշտ, գանգատվելու է մայրիկին իմ վարքից ու առաջադիմությունից և, իհարկե, նախօրոք հայտնի էր ինչ պատիժ է սպասվում. տանեցիք ինձ սահադաշտ չեն թողնի: Առաջին անգամ չէր այդպես լինում:

Վերջին դասին ես նստել ու տանջվում էի: Որպեսզի թույլ տան սահադաշտ գնալ, կարելի էր մի քանի միջոց փորձել. կարելի էր դասերից հետո արդարանալ մայրիկի առաջ. «Ազնիվ խոսք, այդպիսի բան չի եղել... Ազնիվ խոսք, ես ճիշտ եմ պատասխանել», կարելի էր ձեռքերը կրծքին դնելով երդվել. «Ազնիվ խոսք, դա այլևս չի կրկնվի». կարելի էր համոզել բակի երեխաներին, որ գան իմ ետևից ու խմբով խնդրեն մայրիկին. «Խըն-դրու-ում ենք բա-ց թողեք նրան, նա այլևս չի-չի ա-անի», վերջապես կարելի էր համոզել մայրիկին, որ ինձ թույլ տա միայն 15 րոպեով սահադաշտ վազել, «Դե գոնե տասը րոպեով, գոնե հինգ»... դե լավ, մտածում էի ես, իրադրությունը կասի, թե ինչից սկսեմ:

Խոսակցությունը տեղի ունեցավ դպրոցի միջանցքում: Լիդիա Վասիլևնան սովորականի նման մայրիկի ներկայությամբ ինձ ամոթանք էր տալիս, ասելով, որ ես ընդունակ, բայց ծույլ եմ, որ պատասխանելու ժամանակ հույս եմ դնում հուշելու վրա, որ դասերի ժամանակ խանգարում եմ ինձ և ուրիշներին, որ դասամիջոցներին վազվզում եմ, դասագրքերը շպրտում սրա-նրա վրա, բոլորի հետ կռիվ սարքում, որ երկրաչափության դասերին անկյունաչափ ու քանոն չեմ ունենում... Եվ էլի շատ բաներ այն մասին, թե ինչպիսին կարող էի լինել ես, բայց, ցավոք, ինչպիսին եմ իրականում:

Գլխահակ կանգնել էի ու աչքի պոչով շուրջս էի նայում: Մեր կողքով դիտմամբ առաջ ու ետ սլացավ Սերյոժկա Մալյուտինը և նշանակալից ժպտաց ինձ, այսինքն թե՝ դիմացիր, ծերո՛ւկ: Ես թաքուն աչքով արեցի, այսինքն թե՝ ամեն ինչ կարգին է, ծերո՛ւկ: Չարախնդորեն ժպտալով, իրար թևանցուկ արած՝ շորորացին Ժանկա Պետրովան և Լյուդկա Սեմյոնովան: Արհամարհական հայացքով չափեցի նրանց: Անցավ դպրոցի ուսմասվարը՝ Նատալյա Կոնստանտինովնան:

Ես համենայն դեպս մտածկոտ տեսք ընդունեցի:

Մայրիկին չէի նայում: Տեսնում էի միայն, թե նա ինչպես է մի ոտքից մյուսին հենվում, ասես ոտքերը սառել էին, և լսում էի, թե ինչպես է ժամանակ առ ժամանակ Լիդիա Վասիլևնայի խոսքերի վրա հառաչում:

Վերջապես, խոսակցությունն ավարտվեց: Ես հագնվեցի, ինչպես հարկն է հասցրի հանդերձա-

# ՍԱՀԱԴԱՇՏ



Է. ԿՈՒՆԴԻՇԵՎԱ

Նկ. ՍԱՐՈ ԳԱԼԵՆՑԻ

բանում ինձ լեգու ցույց տված առաջին դասարանցու վզակոթին և փիտ տեսքով մայրիկի ետևից դուրս եկա դպրոցից:

Սպիտակ ձյունածածկ մայթերին սևին էին տալիս հարթ, փայլուն սղղատեղերը: Աչքի տակով նայեցի մայրիկին: Նա քայլում էր արագ, շրթունքը կրծելով, նայելով ուղիղ իր առաջ: Սպասում էի, թե արդյոք նա առաջինը չի՞ խոսի: Բայց գուցե այն պատճառով, որ ինչպես սովորաբար ինքն էր ասում, բառեր չկային արտահայտելու համար, կամ գուցե այն պատճառով, որ «ցնցված էր լսածից», լռում էր: Եվ ես որոշեցի գործել: Շրթունքներս անմիջապես ուռեցին, իսկ աչքերիս մեջ, ասես պատվերով, արցունքներ հայտնվեցին:

— Գլխավորը,— սկսեցի ես, և ձայնս նույնիսկ դողաց վիրավորանքից,— ինչո՞ւ են ամեն ինչ ինձ վրա գցում: Մի բան պատահի թե չէ, անմիջապես «Պրոշկին, հա Պրոշկին»: Իսկ ես բոլորովին էլ...

— Դու կգնաս,— ընդհատեց ինձ մայրիկը, գլուխը չշրջելով, շարունակելով արագ քայլել:

— Ի՞նչ,— հարցրի ես:

— Այսօր կգնաս,— կրկնեց մայրիկը:

— Ո՞ւր,— չհասկացա ես:

— Սահադաշտ: Ես թույլ եմ տալիս:

Անսպասելիությունից ես մեխվեցի տեղումս: Այդ թույլտվությունն, իհարկե, ինձ շատ կուրախացներ, եթե այդքան շփոթված չլինեի: Կանգնել էի ու չէի հասկանում, թե ինչ է կատարվում ինձ հետ, ինչ-որ բան պակասում էր, որպեսզի ես ինձ լրիվ երջանիկ զգայի...

Ուշքի գալով, հասա մայրիկին և նրա երեսին նայելով, արագ-արագ ասացի.

— Հասկանո՞ւմ ես, ես ոչ մի մեղք չունեմ... Ես մեղավո՞ր եմ, որ ինձ հուշում են. ես ոչ մեկին չեմ խնդրում, որ հուշեն... Իսկ անկյունաչափը, ազնիվ խոսք, ես ոչ մի անգամ չեմ մոռանում, ուղղակի պա–

յուսակս ծակ է, ահա տե՛ս,— և ես բարձրացրի պայուսակը:

Մայրիկի դեմքից չէր հասկացվում, լո՞ւմ է ինձ, թե՞ ոչ: Թերթերի կրպակի մոտ նա հանկարծ կանգ առավ և սկսեց ուշադիր զննել ապակու ետևում ցուցադրված դրոշմանիշերը:

— Սրանք ունե՞ս,— նա ցույց տվեց կուբայական դրոշմանիշերը, որոնց վրա ես վաղուց աչք ունեի և հարմար պահի էի սպասում, որպեսզի ծնողներիս խնդրեմ գնել ինձ համար, բայց այդպիսի պահ չէր գալիս, որովհետև ես օրագրումս կամ «երկուս» էի տուն բերում, կամ՝ «նկատողություն»:

— Ո՛չ,— ասացի ես տարակուսած,— ի՞նչ է որ:

— Բարի եղեք տվե՛ք այս դրոշմանիշերը,— խնդրեց նա կրպակի վաճառողուհուն և, վճարելով, ինձ մեկնեց ծրարը, — վերցրո՛ւ:

— Շնորհակալություն,— ուսերս թոթվեցի ես և ծրարը դրեցի բաճկոնիս գրպանը:

Հանդիպող անցորդների ոտքի տակ ընկնելով, ես սկսեցի կցկտուր խոսել.

— Ընդհանրապես ես մեղավոր եմ, համաձայն եմ... Բայց ես դիտավորյալ, մտածված չեմ արել... Բայց ես, իհարկե, կաշխատեմ...

Կինոթատրոնի մոտ մայրիկը նորից կանգ առավ, նայեց պատի գունավոր ազդագրին և մտավ տոմսարկղների սրահը:

— Այլևս չեմ անի,— մրթմրթում էի ես, մինչ մենք կանգնած էինք հերթում,— չեմ անի...

Նոր անհաճո նախազգացում ունեցա, բայց դեռևս հույս ունեի, որ մայրիկը երեկոյան սեանսի տոմսեր է վերցնում իր և հայրիկի համար:

Հեռանալով տոմսարկղից, նա ինձ մեկնեց տոմսը.

— Վաղվա համար է: «Մոսկվա — Կասսիոպեա»:

— Մի անգամ արդեն դիտել եմ,— փնթփնթացի ես:

— Ոչինչ, նորից կնայես, չէ՞ որ դու մի անգամ էլ էիր ուզում գնալ:

— Ծնողական ժողովից հետո չթողեցիր գնամ,— հիշեցրի ես:

Բայց մայրիկն արդեն փողոց էր դուրս գալիս: Գրեթե տուն էինք հասել: Նա ճանապարհը շեղեց և մտավ սրճարան:

— Նստի՛ր,— ցույց տալով ինձ ազատ սեղանը, ասաց նա:

Մատուցողուհին, որին այլ դեպքերում ժամերով սպասում ես, վայրկենապես հայտնվեց մեր առաջ:

— Ի՞նչ կպատվիրեիք,— նա պատրաստվեց նշել իր գրքույկում,— ունենք մրգի և կրեմ-բրյուլե պաղպաղակներ:

— Ո՞րն ես ուզում,— հարցրեց մայրիկը:

— Միևնույն է,— դժվարությամբ ասացի ես:

— Այդ դեպքում և՛ մրգի, և՛ կրեմ-բրյուլե: Կրկնակի բաժին: Մրգաչրով,— պատվիրեց մայրիկը.— Ես չեմ ուզում:

Մատուցողուհին մի ակնթարթում բերեց պաղպաղակով թասը և դրեց իմ առաջ:

— Կե՛ր,— ասաց մայրիկը:

— Չեմ ուզում,— զգալով, որ չգիտես ինչու շրթունքներս դողում են, ես շրջվեցի և մի կողմ հրեցի թասը:

— Բայց դու պաղպաղակ սիրում ես,— մայրիկը թասն ինձ մոտեցրեց:

Ես ուզում էի նորից մի կողմ հրել պաղպաղակը, բայց հարևան սեղաններին նստած այցելուները սկսեցին հետաքրքրությամբ մեզ նայել, նրանք երևի առաջին անգամ էին նման բան տեսնում:

Ստիպեցի ինձ մի քանի գդալ պաղպաղակ ուտել ու այլևս չկարողացա:

Հայրիկը տանը չէր: Մայրիկը հանեց վերարկուն և լռելյայն սկսեց ճաշը տաքացնել: Հետո ուսերին գցեց գլխաշորը և արդեն նախասենյակում ասաց.

— Ես գնում եմ հարևանուհու մոտ: Ամեն ինչ տաքացված է, սալիկի վրա է: Ճաշի՛ր և գնա սահադաշտ:

— Շատ պե՞տքս է սահադաշտը,— գոռացի ես,— ի՞նչ եք բոլորդ մի գլուխ սահադաշտ, հա սահադաշտ: Միգուցե ես բոլորովին էլ չեմ ուզում սահադաշտ գնալ:

Բայց մայրիկը արդեն իր ետևից փակել էր դուռը:

Ես մենակ մնացի տանը: Սեղանին տկտկում էր զարթուցիչը՝ ցույց տալով, որ շուտով հինգը կլինի: Եվ հանկարծ ես փլվեցի բազկաթոռին, գլուխս սեղանին դրեցի ու հեկեկացի:

Սկզբում ես կամաց էի լալիս, հետո՝ ավելի ու ավելի բարձր: Հիշելով Լիդիա Վասիլևնայի խոսքերը, լալիս էի, որ ես ո՛չ գերազանցիկ եմ, ո՛չ հարվածային և, որ երբ ես գրատախտակի մոտ սպասում եմ Սերյոժկա Մալյուտինի հուշելուն, ոչ միայն աչքերս են աջ ու ձախ դառնում, այլև եթե կողքից նայես, հավանաբար, ականջներս էլ են զվելի ձևով շարժվում... Լալիս էի իմ դասագրքերի տեսքի համար, նրա համար, որ մի անգամ դասարանում Ժանկա Պետրովան բոլորի ներկայությամբ դիտմամբ հարցրեց Լյուդկա Սեմյոնովային, թե ինչի՞ց ավելի շատ կզզվեր, ձեռքն առնելով իմ դասագի՞րքը, թե՞ ճահճային գորտը... Լաց էի լինում նրա համար, որ մեր դասարանի ամենափոքրահասակին՝ Զոյկա Ֆեոդորովային բավական է մոտենամ, նա կծկվում է, ասես սպասում է, որ նորից կխտտացնեմ ճակատին...

Ես նստել էի դատարկ բնակարանում, ձայնս գլուխս էի գցել, հեկեկում էի, հեկեկում ամբողջ ուժով և դրանից ավելի զզվելի էի դառնում իմ աչքում:

*Թարգմ. Ռ. ԲԱՐՈՅԱՆԻ*







# 333 ՏԱՐԻ ՋՐԻ ՏԱԿ

*ՄԱՐԳՕ ՂՈՒԿԱՍՅԱՆ*

1961 թվական. Ստոկհոլմի նավահանգստում ասեղ գցելու տեղ չկար: Ստորջրյա թաքստոցից լույս աշխարհ էր հանվում «Վասա» նավը: Մարդիկ վաղուց էին սպասում այդ օրվան: Նրանցից յուրաքանչյուրը քանի՞-քանի անգամ էր եկել այդ ափը, որտեղ ջրի երեսը խաղաղ էր, մինչդեռ խորքի շերտերում եռում էր աշխատանքը: Ամերես թվում էր, թե ոչինչ չի կատարվում, սակայն «Վասան» սանտիմետր առ սանտիմետր ճեղքում էր ջրի թանձր տանիքը:

1977 թվական, մայիս: Նստած ենք մութ դահլիճում և սպիտակ կտավի վրա սահում են նավի ճակատագիրը բացահայտող դրվագները: Երբ ժապավենը հասնի ավարտին, մենք կգնանք դիտելու «Վասան» ցամաքային իր հանգրվանում: Սակայն, ինչպես ստոկհոլմցիք 1961 թվականի ապրիլյան այն օրը, մենք ևս կլանված ենք բարձրացման գաղտնիքներով:

Վերջապե՛ս... Էկրանի վրա նախ երևում են կայմաձողերը, ապա նավախելը, այնուհետև տախտակամածը, որից դանդաղորեն սահում է ջրի քողը, ինչպես բացվող հուշարձանից մետաքսե ծածկոցը:

Քիչ առաջ փոքրիկ նավահանգստում, որտեղից մենք պետք է մոտորանավ նստեինք, հասնելու համար «Վասայի» նավահանգիստը, նավավը բղավում էր՝ «Նա՛խ երեխաները, նա՛խ երեխաները»: Իսկ դպրոցականները շտապում էին, որովհետև երես առ երես հանդիպելու էին պատմությանը: Ինչպիսի՜ տպավորություններ էին սպասում նրանց՝ դասագրքի հետ համեմատած:

... 1628 թվականի ապրիլի 10-ին ռազմական «Վասա» նավը պատրաստ էր առագաստները պարզելու: Ճանապարհողներն ափից թափահարում էին թաշկինակները և բարի երթ մաղթում: Սակայն Ստոկհոլմի նավահանգստից նավը դեռ չէր հեռացել, որ ուժգին քամուց թեքվեց, քիչ անց թեքման անկյունը փոքրացավ և ապա սուզվեց՝ «չբացված առագաստներով, դրոշներով և ամեն ինչով»:

Հետաքննությունը չբացահայտեց նավի խորտակման պատճառները: Ռազմական այդ մեծ նավն իր հետ հատակ տարավ 137 նավաստի և 300 զինվոր:

1664 թվականին շվեդ Տրեյլեբենին հաջողվեց 64 հրանոթներից 53-ը բարձրացնել: Այնուհետև նավը մոռացության մատնվեց: Եվ դա տևեց մինչև այն պահը (1956 թ.), երբ ծովային ինժեներ Անդերս Ֆրանսեն որոշեց «Վասայի» գտնվելու վայրը: Ջրասուզակները նավի տակ, դարավոր տիղմի մեջ, թունելներ անցկացրին մետաղյա ճոպանների համար: Պողպատե կոդակապերով ամրացրին նավի տարբեր մասերը: Ամբարձիչներն աստիճանաբար տեղաշարժեցին նավը և, վերջապես, ջրից դուրս բերեցին: Հնագետները մեծ պգուշությամբ նավը մաքրեցին հազարավոր տոննա տիղմից և առանձնացրին պարունակությունը՝ 24 հազար իր փայտից, կաշվից, կտորից, ոսկուց, արծաթից, պղնձից... Ցուցափեղկում մենք տեսանք այդ ամենը: Նաև կովի կմախք: Չէ՞ որ այն ժամանակ սառնարան չկար և նավաստիներին ու զինվորներին կերակրելու համար միս էր հարկավոր:

Եվահա «Վասան» իբրև թանգարանային եզակի ցուցանմուշ կանգնած է ծածկի տակ. Դյուրգերտեն կղզու ափին, 20 մետր հասակով, կայմերով, ղեկանիվով, ամրակուռ զամերով և ամեն ինչով: Դիտելու համար հատուկ աստիճաններ են կառուցված: Տուրիստների և երեխաների անվերջ շարանը շրջանցում է նավը նախ ներքևից, ապա աստիճաններով բարձրանում ձվաձև պատշգամբ և պտտվում նավի չորս բոլորը: Նավը մասամբ վերականգնված է. ժանգոտված պտուտակները փոխված են նորերով: Առաստաղից կաթիլ առ կաթիլ թափվում է յուղանման հեղուկը, պոլիէթիլենային գլիկոլի և հատուկ աղերի խառնուրդով, որոնք «պահածոյացնում» են նավը, պահպանում սնկերից ու ջրիմուռներից:

Ահա ամբողջ պատմությունը:

Հենվելով բազրիքներին կզուշությամբ իջնում ենք խոնավ աստիճաններով, աշխատելով չխանգարել նրանց, ովքեր նկարահանում են: Այցելուները զարմացած են, բայց ոչ ուրախացած: 333 տարի առաջ նավաշինարարների սխալի պատճառով ողբերգություն է տեղի ունեցել: Հարյուրավոր մարդիկ կուլ են գնացել ծովին: Եվ կարծես այս նավը, պողպատե կմախքի մեջ առնված, հուշարձանն է զոհվածների և վկան՝ պատմական նշանավոր իրադարձությունների:

---

Սկիզբը՝ №№ 9, 11.

Խմբագրության աշխատակից Վ. Մնեյակյանը, Կիրովականի Արտեկ ճամբարում այս թեմայով զրույց անցկացրեց կոմերիտական ուսուցման դպրոցի շուրջ 150 բարձր դասարանցիների հետ, իմանալու համար, թե մեր օրերի կոմերիտականների որ արարքն է նրանց ներուսական, կամքի մեծ ուժ ու նվիրում պահանջող թվացել: Տպագրում ենք նրանց նիշատակած ուշագրավ օրինակներից:

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ

## ՎՆԱՍԸ ՄԵԾ ՉԷՐ ԼԻՆԻ, ԵԹԵ...

Աշոտ Ղազարյանը ծառայում էր բանակում և աչքի էր ընկնում մարտական լավ պատրաստվածությամբ: Առաջադրանքները կատարում էր ժամանակին և խնամքով, արժանանում էր հրամանատարության խրախուսանքին:

Խաղաղ ու մութ գիշեր էր: Աշոտը ժամապահ էր: Նա աչալուրջ հետևում էր իրեն վստահված պահակակետին, երբ նկատեց մթերային պահեստից բարձրացող ծուխը: Եվս մի ակնթարթ, և բոցի հրեղեն լեզուները թրատեցին խավարը: Աշոտը գիտակցելով, որ այդպիսի արագությամբ սաստկացող հրդեհը շուտով կլափի բոլոր պահեստները, նետվեց այնտեղ ու կրակմարիչով սկսեց փակել հրդեհի ճամփան: Միաժամանակ դժվար էր պայքարել ամեն կողմից դուրս ժայթքող ու հարևան շենքը ձգվող հրե լեզուների դեմ: Նա կենդանահու կռվի մեջ էր մտե կրակի հետ: Դժվար էր սանձել փոթորկվող, գալարվող ու այրող կրակը: Սակայն շուտով վրա են հասնում ընկերները և մեկուսից օդակ ստեղծելով հրդեհի շուրջը, հանգցնում են այն:

Հրդեհի պատճառով վնասը առանձնապես մեծ չէր լինի, եթե... ողջ մնար անվեհեր մարտիկը՝ Աշոտ Ղազարյանը:

Այժմ մեր դպրոցի պիոներական մի ջոկատ նրա անունն է կրում, իսկ դասարանում Աշոտ Ղազարյանի անվան նստարան կա, որին նստելու իրավունք են ստանում միայն լավագույն աշակերտները:

*Գ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*
*(Կալինինոյի № 1 դպրոց)*

## ԱՇՏԱՐԱԿԸ ՏԵՂԱԴՐՎԵԼ ԷՐ... ԲԱՅՑ Ի՞ՆՉ ԳՆՈՎ

Դիլիջանում սարեր, դժվարամատչ լեռներ շատ կան: Ամռանը դրանք թավիշ կանաչով են ծածկվում, իսկ ձմռանը՝ սպիտակաթույր ձյունով: Ձմռանը երբեմըն այդ գագաթներում օրերով ձյունամրրիկներ են մոլեգնում: Մի անգամ, այդպիսի ձյունամըրրիկներից տապալվել էր հեռուստատեսային պատկերն ընդունող ու փոխանցող աշտարակը: Ձյունամրրիկները մի փոքր խաղաղվելուց հետո ուղղաթիռով երիտասարդ մասնագետներին իջեցրել էին լեռան կատարը: Սառնամանիքի ու թրատող քամու տակ հեշտ չէր աշխատել, բայց նրանք ուժերի գերլարումով կարողացել էին տեղադրել աշտարակը: Երբ մնացել էր միայն հիմքերն ամրացնել, փոթորիկները նորից սաստկացել էին: Երիտասարդները մտածելով, որ փոթորիկը կարող էր նորից տապալել աշտարակը, գիշերը մնացել ու ավարտել էին դժվարին աշխատանքը:

Առավոտյան, երբ արդեն կապը վերականգնված էր և ուղղաթիռը գնացել էր նրանց բերելու, պարզվել էր, որ սոսկալի սառնամանիքից շատերի ձեռքերն ու ոտքերը ցրտահարվել էին:

*Ա. ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*(Դիլիջանի № 1 դպրոց)*

## ՊԱՐՏՔԻ ԲԱՐՁՐ ԶԳԱՑՈՒՄՈՎ

Ճամբարային շրջանն սկսվել էր, և մենք առաջին հերթափոխի ավտոբուսներով պանում էինք ճամբար: Պիոներական երգ ու ծիծաղից կրնգացող ավտոշարասյունը անցնելով գեղատեսիլ լեռնափեշերով, խորը ձորերով, մոտենում էր Հայկական Արտեկին: Հանկարծ ավտոբուսի վերջին շարքում նախ մի թույլ կանչ լսվեց, ապա վայնասուն

# ՍԻՐԱՆՔԻ ՕՐԻՆԱԿՆԵՐ

բարձրացավ: Հանկարծակիի եկած վարորդը կտրուկ արգելակեց: Գոլորշին լցվեց ավտոբուսի ներսը և ետին շարքերից բոլորը խառնաշփոթ նետվեցին առաջ: Թվում էր, թե դատարկ բան է պատահել... Հովացման հարմարանքի խողովակներից մեկը պայթել էր:

Վախեցած ու իրարով անցած պիոներներից հետո մեքենայից դուրս եկան մեկ ճամբար տանող ընկեր Արամն ու ընկեր Արտյոմը:

Առաջին հայացքից չճանաչեցինք նրանց: Ցավից նրանց դեմքերը ծռմռվել էին, իսկ վերնաշապիկներից գոլորշի էր բարձրանում: Երբ մյուս ավտոբուսներից իջած մանկավարժներն ու ջոկատավարները օգնություն ցույց տվեցին նրանց, բոլորն էլ տեսան, թե ինչպիսի այրվածքներ էին ստացել մեր ջոկատավարները:

Վերջին շարքում նստածները պատմեցին, որ երբ պայթել է հովացնող հարմարանքի խողովակը, բարձր ջերմությունից ամբողջապես գոլորշի դարձած ջուրը մեծ ուժով դուրս է մղվել: Ջոկատավարները աննկարագրելի արագությամբ մի կողմ են հրել երեխաներին ու իրենց մարմնով փակել եռացող ջրի ճամփան:

Իհարկե, շատ ցավալի էր, որ նրանք այդքան ծանր վնասվածքներ էին ստացել: Սակայն ուրախ էինք այն գիտակցությամբ, որ ապրում ենք այնպիսի մարդկանց կողքին, ովքեր չխնայելով իրենց, սեփական մարմնով փակել են դուրս ժայթքող եռման ջրի ճամփան և տասնյակ երեխաների փրկել այրվելուց:

*Ա. ԳԱԼՍՏՅԱՆ*
*(Ապարան, Արագածի դպրոց)*

## ՄԻՔԱՅԵԼ ՄՈՐՈԶ

Մեր օրերի կոմերիտական սխրանքի մասին խոսելիս ես անմիջապես հիշում եմ Միքայել Մորոզին: Բելոռուսիայի Օրշանսկ քաղաքի մանկավարժական ուսումնարանի սանը դեռ չէր բոլորել իր տասնութ տարին: Համակուրսեցիների հետ նա գնացել էր օգնելու «Պրոգրես» կոլտնտեսությանը: Աշխատանքը լարված ու ծանր էր: Կարտոֆիլի առատ բերք էին աճեցրել հողագործները, և ուսանողները շունչ քաշելու ժամանակ չունեին: Հանկարծ խոփի տակից դուրս եկավ ծանր ու ժանգոտված մի արկ և կարտոֆիլների հետ գլորվելով բարձրացավ ցանցի վրա: Արկը ուշ նկատեցին, շատ ուշ, և անհնար էր կարտոֆիլ քանդող-հավաքող կոմբայնն ու տրակտորը կանգնեցնել: Ոչ էլ ժամանակ կար դրանց վրա աշխատող չորս ուսանողներին, կոմբայնավարին ու տրակտորիստին զգուշացնել պատահածի մասին: Մեկ-երկու վայրկյանից ժանգոտված մահաբեր արկը կընկներ բերքահավաքման բաժինը և...

Մտածելու ժամանակ էլ չկար: Միքայել Մորոզը արագ մոտեցավ, զգուշությամբ ճանկեց արկը և հերկած ակոսների միջով անշտապ առաջացավ դեպի արտի մոտի ձորակը: Ընդամենը մի քանի մետր էր մնում, երբ խլացնող աղմուկ լսվեց... Այո՛, պատերազմից ավելի քան երեսուն տարի անց, բայց պատերազմի կրակոցից ընկավ ևս մի մարդ՝ կոմերիտական Մորոզը:

Երեք օր շարունակ բժիշկները պայքարում էին նրա կյանքի համար, երեք օր շարունակ ընկերները, հարազատները սպասում ու հավատում էին, որ նա կապրի, բժիշկները կբուժեն բզկտված պատանուն: Մահվանից քիչ առաջ, երբ տեսել է ներս մտնող մորը, իր վերքերը մոռացած նրա համար է անհանգստացել. մոր սիրտը վատ է, երկար ճամփորդության դժվար է դիմանում:

Ընկերների կյանքը փրկելու, անձնազոհ արարքի համար տարեսկզբին Միքայել Մորոզի ծնողներին հանձնվեց իրենց որդու «Կարմիր աստղի» շքանշանը: Այժմ Խիլչիցկ գյուղի դպրոցում նրա մասին պատմող ցուցափեղկ կա և չորրորդ դասարանի պիոներական ջոկատը պայքարում է անվեհեր կոմերիտականի անվամբ կոչվելու համար:

*Ք. ՍՈՂՈՄՈՆՅԱՆ*
*(Աշտարակի № 1 դպրոց)*

## ԶԻՆՎՈՐԸ ՏՈՒՆ ԷՐ ՎԵՐԱԴԱՌՆՈՒՄ

Գագիկը բարձր էր պահում դպրոցի պատիվը նաև բանակում, ուր մեկնել էր ծառայության: Մարտական ու քաղաքական բարձր պատրաստվածության, գերազանց ծառայության համար արձակուրդ էր ստացել ու վերադառնում էր հայրենի քաղաքը: Մանկության օրրանն արդեն մոտ էր: Կառամատույցում կանգնած նայում էր ինչ-որ չափով փոխված, մինչ այդ անսովոր ու նոր հրապույրով ներկայացող քաղաքին, երբ գծերի մեջ նկատեց հինգ տարեկան մի երեխայի: Գնացքը սուլելով մոտենում էր նրան: Առանց ակնթարթ կորցնելու, նա նետվեց գծերի մեջ և դուրս գցեց փոքրիկին, իսկ ինքը չհասցրեց դուրս գալ...

*Տ. ԽԱՉԻԿՅԱՆ*
*(Կիրովականի № 12 դպրոց)*



Ասում է, էլի՛: Հիմա կտանեմ, ջուր կտամ եզներին, կվերադառնանք և էլի մենք չորսով կշարունակենք մեր աշխատանքը:

Հասանք աղբյուր: Երկուսով դնչները խրեցին նովի մեջ, կուշտ խմեցին: Ես նրանց ցույց տվի եռդարձի ճանապարհը: Ալան այս անգամ էլ չենթարկվեց, նստեց ծառի շվաքում, որ հանգստանա: Դե արի ու էս եզանը հասկացրու, որ գործը կիսատ է մնացել, որ պապս արտում սպասում է, որ հանգըստանալու ժամանակը չէ...

— Ե՛կ,— ճիպոտով պարկում եմ մեջքին: Շարժվելու փոխարեն, տնքում է: Նստում եմ մեջքին, որ ելնի, որ շարժվենք առաջ:

— Ե՛կ, հասկացի՛ր, պիտի գնանք,— մեջքից իջնում, պարկում եմ կողերին, գլխին: Գլուխը եզավարի տարուբերում է ու դարձյալ լնդունում իր նախկին դիրքը:

# ՏԽՈՒՐ ՎԵՐՋՈՒՑ

ՅԱՇԱ ԲԱԲԱՅԱՆ

Ալա եզը տեղում կանգնեց: Հոգնել է երնի լուծը քաշելուց: «Խումարի գործը ծանրացավ,— անցավ մտքովս.— հիմա Խումարին մնում է ուժ հավաքել՝ Ալային օգնելու»: Խումարը մի մետրի չափ առաջ է անցնում, քաշում է, քաշում: Բայց իզուր. Ալան չոքել է տեղում ու լեզուն հանել:

Ես ճիպոտով պարկում եմ Ալայի ու Խումարի մեջքերին: Խումարը վիզը երկարում է, ասես բողոքում, որ ինքը մեղք չունի, մենակ եզն ի՞նչ անի... Կողքից խեթ-խեթ նայում է Ալային ու մեկ էլ՝ ձգվում առաջ: Քիչ հետո Ալան նստում է, և լուծն ավելի է ծանրանում Խումարի վզին:

— Պետք է արձակել,— որոշում է պապս.— Ալան հինգ տարով մեծ է Խումարից, հոգնում է Ալան,— ու մոտենում, ազատում է լծից:

— Եզներին ջրի՛ տար, Հակո՛բ,— ասում է:

Եզները լուռ քշում եմ դեպի աղբյուր: Կեսօր է: Արևը վառում է՝ դեմքս, մազերս, գլուխս: Ճանապարհով քայլում ենք երեքով՝ ես, Ալան ու Խումարը: Պապս ասում էր, որ Խումարը ինձանից 12 տարով մեծ է, Ալան՝ 17 տարով, որ ինքը երկու անգամ մեծ է մեր երեքի տարիքից: Բայց էլի դիմանում է, չի հոգնում: Երբեմն էլ ասում էր.

— Որ հոգնեցի, պիտի պառկեմ ակոսի մեջ, գըրկեմ հողը: Հողն էլ ինձ գրկի: Որ մի օր բարձրանամ հասկերի հետ, հասունանամ հասկերի պես և հոգին իմ սվսվա...

Խումարը կանգնած նայում է ինձ: Ես գիտեմ, ինչ էլ որ ասեմ, Խումարը կանի, նա հիմա էլ պատրաստ է աշխատանքի վար ու ցանքի լծվելու: Բայց արի ու տես, որ էս Ալան փչացնում է ամբողջ գործը: Խումարը եկավ, դունչը մոտեցրեց Ալային ու սկսեց հրել: Ոչ մի շարժում:

Ճանապարհին ի վեր բարձրանում եմ: Շոգը խեղդում է: Մենակ եմ, ո՛չ Ալան կա, ո՛չ էլ Խումարը: Զայրույթից պայթում է սիրտս: Այս պահին որ երկուսին էլ մորթեն, չի հովանա սիրտս: Կպրծնեմ այս շոգից ու տանջանքից էլ:

Հիմա ես ի՞նչ պատասխան պիտի տամ պապիս: Ենթադրենք, պապս չէ, մեկ ուրիշն է, ի՞նչ պիտի պատճառաբանեմ:՝ Ասեմ՝ Ալան տեղից չբարձրացավ, կասի՝ լուծը վզին չէր, քորփա՛: Ասեմ՝ Խումարն էլ ցանկացավ, որ նա տեղից ելնի, բայց նա մնաց նըստած, կասի՝ եզան պես ես դատում...

Կանգնել, մտածում եմ: Մեկ էլ երևաց պապս:

— Լավ է՝ մենակ ես եկել,— ասաց,— էսօր մի քիչ շուտ գնանք ճաշի, թող հանգստանան եզները, մեղք են...

Եզներից քիչ հեռու՝ չինարու տակ, հանգստանում էինք: Պապս պառկել էր թեք, մտածում էր: Երևի, անցած-գնացած օրերի վրա: Բայց՝ ոչ:

— Ալային էսօր իզուր լծեցինք,— ասաց:

— Խումարը լավն է, չէ՞ պա՛պ,— հարցնում եմ:

— Խումարն էլ մի պտուղ չի, այնքա՞ն է չարչարել

ինձ, անքա՞ն է կամից ցցել... Կալին սովոր չէր, նոր եկ էր: Միշտ դուրս էր գալիս կալից, որ փախչի: Բանեցրինք այնքան, մինչև սովորեց, մինչև կարգին եկ դարձավ: Իսկ Ալան,— շարունակում էր պատմել պապս,— Ալան ուրիշ էր՝ խելոք, հանգիստ ու աշխատասեր: Ամեն ինչ հասկանում էր Ալան. կգար՝ կկանգներ լծի առաջ ու կսպասեր... Անգամ վիզը կերկարեր լծելու պահին: Ալան ծերացե՞լ է, հոգնել է:

Նայում է Ալային ու հիշում իրենց գլխի անցուդարձը: Ալան լուռ որոճում է, տխուր նայում աշխարհին:

Երկինքը միանգամից մթնեց: Անձրև էր սպասվում, հորդառատ անձրև: Մեկ մնում էր տուն շտապել: Սկզբում որոտները եկան բառաչի էին նման, իսկ հետո ուժեղացան այնպես, որ սարսափ էին պատճառում:

Շուտով եկավ կոկային հեղեղը:

— Ի՞նչ անենք, պա՛պ,— վախից կոււչ էի եկել:

Պապս էլ չգիտեր ինչ աներ, մի տեսակ շփոթված էր: Հանդվորները բոլորը տուն էին շտապում:

Մեկն էլ ձիով էր: Քեռի Շմավոնն էր:

— Շմավո՞ն,— հետևից կանչեց պապս: Մոտեցավ:

— Դու երեխո՛ւն տար,— խնդրեց պապս,— ես եզները այստեղ թողնել չեմ կարող: Ես կգամ:

Երկուսով տեղավորվեցինք ձիու թամբին, և մտրակեց, ձին պոկվեց տեղից: Մեծ արտի մոտ անձրևը բռնեց: Քեռի Շմավոնը թեքվել էր դեպի ինձ, որ պաշտպանի անձրևից:

Իսկ ես պապիս մասին էի մտածում:

Մեր տունը պահողը պապս էր, հայրս չկար... Աչքերս ջրակալվեցին, անձրևի հետ հոսեցին կաթիլները:

Պապս տուն դարձավ ուշ երեկոյան: Շորերը թաց էին: Մրսել էր, դողում էր ամբողջ մարմնով:

— Տեղս գցի՛, Սարուխանի՛ աղջիկ, ոնց որ մահս եկել է:

Սարուխանի աղջիկը տատս էր. փեշերը վեր քաշած գործի անցավ: Բոլորս վախեցած՝ պապիս էինք նայում: Թրթռում էին ճակատի կնճիռները, կայծկլտում փոս ընկած աչքերը:

Տատիս օգնությամբ փոխեց շորերը, անկողին մտավ:

Պատի մեջ հին կրակատեղ ունենք: Տատս վառեց կրակը, որ ջուր եռացնի:

Ամբողջ գիշեր տատս թաց շորով շփում էր պապիս ճակատը: Ոտքերը տաք ջրով լվացել էր, թել խմեցրել: Քուն չեկավ աչքերին: Ամբողջ գիշեր անհանգիստ էր պապս, ինքն իրեն խոսում էր.

— Ալա եզը հիվանդացավ...

— Արորը մնաց արտում...

— Ցանքը կիսատ մնաց...

— Եզներին ջրի՛ տար, Հակո՛բ...

— Չէ՛, Ալան լավն է...

Իսկ մենք թաքուն լալիս էինք:

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԹՈՒԹԱԿԸ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

**Չկար ու կար,**
**Կար ու չկար**
**Մի թագավոր**
**Գոռոզ ու չար:**
**Մի օր նա ազդ**
**Կախեց պատին.**
**«ԵՐԳԻՉ Է ՊԵՏՔ ԻՄ ՊԱԼԱՏԻՆ»:**
**Լուրը անցավ**
**Բերնեբերան**
**Պալատ եկավ**
**Մի մեծ երամ.**
**— Դե, սկսե՛ք,— ասաց արքան,—**
**Ծա՛յ, դո՛ւ արա գովքը իմ տան:—**
**Ծայը ճչաց ճիչով ծովի,**
**Երգեց, բայց իր ծովը ծավի:**
**— Անմիտ երգ է, դե դու լռի՛ր,**
**Սոխա՛կ, երգի՛ր ուժն իմ սրի:—**
**Ու Սոխակը երգով թռվեց,**
**Ոչ թե սուր, այլ՝ ծաղիկ գովեց:**
**— Լավ ձայն ունես, բայց վատ խոսքեր...**
**Երգի՛ր, Կռո՛ւնկ, թագն իմ ոսկե:—**
**Կանչեց Կռունկը ձայնով ջինջ,**
**Սակայն գովեց շամբեր ու լիճ...**
**Արքան խոժոռ լսեց, լռեց**
**Ու բոլորին դուրս վտարեց...**
**Երբ Թութակի հերթը հասավ,**
**Թութակն իսկույն գործն հասկացավ,**
**Ինչ որ լսեց, այն էլ կրկնեց:**
**Արքան նրան երգիչ կարգեց:**

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*Բանասիրության դոկտոր*

## 6. ԲԱՌԱՊԱՇԱՐԻ ՄԱՍԻՆ՝ ՆԱԵՎ ԸՆԴՀԱՆՐԱՊԵՍ

**Ասենք թե որմնադիրը պատ է շարում: Նրա նըպատակն է, որ պատը լինի ամուր, բայց նաև գեղեցիկ: Վարպետը թափված քարից չի վերցնում որը պատահի և դնում պատին: Նա ջոկում է, ընտրություն է կատարում, զննում է քարը, որ տեսնի՝ բըռնո՞ւմ է, արդյոք, նախորդ քարերին, տեղը նստո՞ւմ է, որ և՛ հաստատուն լինի, և՛ գեղեցիկ:**

**Ուրիշ խոսքով՝ նա ներդաշնակություն է ստեղծում շարվածքի մեջ, ելնելով երկու նկատառումից՝ գործնական, որ ամրությանն է վերաբերում, և գեղագիտական, որ գեղեցկության ասպարեզն է: Բայց համապատասխան քարեր ընտրելու համար նա պետք է ունենա ընտրության հնարավորություն, որքան մեծ հնարավորություն՝ այնքան լավ: Ինչքան մեծ լինի նրա ք ա ր ա պ ա շ ա ր ը, այնքան հեշտ կլինի գործը՝ այս քարը հարմար չի գա, կվերցնի մյուսը, երրորդը... մինչև որ գտնի ամենից հարմարը:**

**Միշտ և ճիշտ նույնն է կատարվում, երբ մենք խոսում ենք կամ գրում. մենք բառերի ընտրություն ենք կատարում ըստ այն նպատակի, որին հետամուտ ենք: Այստեղ ևս՝ որքան մեծ լինի ընտրության հնարավորությունը, որքան հարուստ լինի մեր բ ա ռ ա պ ա շ ա ր ը՝ այնքան լավ:**

# ԹՇՆԱՄՈՒԹՅՈՒՆ՝ ԲԱՐԵԿԱՄԻ ՆԿԱՏՄԱՄԲ

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ

Դեռ մի տարի էլ չկա, որ այս գիրքը տպագրվել ու եկել է գրադարան... բայց տեսեք՝ նրա բազմաթիվ թերթերը ծալծլված են ու պատռված, որոշ թերթեր էլ ընդհանրապես պոկված են: Կազմը քրքրված է, կեղտոտված, եզրերը մաշված, դժվարությամբ է կարդացվում հեղինակի անուն-ազգանունը և գրքի վերնագիրը:

Գիրքը գրելու թուղթ կամ տետր չէ: Բայց նայեցե՛ք այս գրքի էջերին կատարված թվաբանական հաշվումներին, հեռախոսի համարներին, գծագրերին ու սխեմաներին: Գիրքը գիտելիքների աղբյուր է, ոչ թե... Տեսեք. տարբեր էջերի վրա թանաքով անփույթ ընդգծված են պարբերություններ, տողեր և լուսանցքում գրված. «Հայրենիքի թեման», «Բնության նկարագրություն», «Մայրական սեր» և այլն: Վերջապես, գիրքը հուշամատյան կամ կարծիքների մատյան չէ: Իսկ այստեղ ինչպիսի մակագրություններ ասես, որ չկան: Ահա մի քանի նմուշ. «ինչպիսի՜ փայլուն մտքեր», «ի՜նչ գրագետ լեզու»: «Դու հիմար ես»: «Ես էլ այս կարծիքը կասեմ՝ խելոք»: «Մեր կատուն ձագեր ունեցավ»: «Այսօր տեսա նրան: Նա ինձ չնայեց»: «Սուսանը վատ աղջիկ է»: «Վաչեն վաղկոտ է»: «Մարթը նա ա, ով խակել ա խաղում»: «Սայաթը եկավ մեր հայաթը»: «Գրասերների» մի խումբ էլ կա, որ ուզում է անպայման հետագա սերունդներն իմանան, որ ինքը կարդացել է այդ գիրքը: «Հիանալի գիրք է: Սրա կարդացողը հիանում է սքանչելի բառապաշարով»: «Ոչի՛նչ, վատ գիրք չի, բայց լավերն էլ եմ կարդացել»: «Որ հասկանանք այս գրքի միտքը, շատ մտքեր կհասկանանք»: Տեսնո՞ւմ եք, թե ինչքան «մտքեր» են հասկացել: Կարելի է միայն մի միտք հուշել. եթե գիրքը, իրոք հավանել եք, կարող եք դպրոցում կամ գրադարանում կազմակերպել նրա քննարկումը և հանդես գալ ձեր տպավորություններով: Այս կարգի «Գրասերներ» էլ կան, ո-

Երբեմն ընտրությունը երկար է տևում. նկատե՞լ եք ինչպես է մարդ կմկմում՝ հարմար բառը գտնելու համար: Երբեմն՝ դա չափազանց տևական, նույնիսկ տանջալի մի ընթացք է. բանաստեղծը կարող է օրեբով փնտրել իր ուզած բառը և չգտնել: Առօրյա խոսակցության մեջ էլ կատարվում է այդ ընտրությունը. դա կարող է տևել անորսալի մի ակնթարթ, բայց անպայման կատարվում է: Ամենահուզված պահին էլ մենք ջանում ենք գտնել մեզ համակած հուզմունքին սազական բառը, իսկ երբ չենք գտնում՝ ընկնում ենք ծիծաղելի վիճակի մեջ:

Ջննենք լեզվի կիրառության սովորական մի օրինակ՝ նամակ գրելը: Նամակի առաջին բառերը դիմում են այն մարդուն, ում գրում ենք: Ծիծաղելի կլինի, եթե մեր մտերիմ ընկերոջը դիմենք հ ա ր գ ե լ ի ա յ ս ի ն չ բառերով, նույնքան անհարմար կլինի, եթե մեր ուսուցչին դիմենք ջ ա ն -ով: Այս դեպքում է, որ պիտի գրել հ ա ր գ ե լ ի, գուցե և՝ շ ա տ հ ա ր գ ե լ ի կամ՝ մ ե ծ ա ր գ ո, նայած մեր վերաբերմունքին, որ ունենք հասցեատիրոջ նկատմամբ՝ պաշտոնական, մտերմական...

Բառերնըստ մեր վերաբերմունքի և տրամադրության ընտրելու համար մենք պետք է ունենանք բառապաշար, ինչքան կարելի է նոխ ,հարուստ բառապաշար: Բայց բառապաշար էլ կա, բառապաշար էլ:

Այդ մասին հաջորդ անգամ:

րոնց մտահոգում է գրքի պահպանությունը: Այո: Եվ դրանք ըսպառնալիքով ու հորդորանքով գրում են գրքի էջերին. «Ով այս գիրքը գողանա, ջուխտ աչքերով կուրանա»: «Գողացողը մարդ չի»: «Այս գիրքը չկեղտոտել»: Ինչպես ասում են՝ այդպիսի «պաշտպաններից» աստված փրկի, ապատի:

Գիրքը մեր բարեկամն է, և բարեկամությունը պետք է հատուցել բարեկամությամբ: Գիրքը գիտելիքների աղբյուր է, չպետք է պղտորել այդ աղբյուրը: Գիրքը երջանկություն է պարգևում, և այդ երջանկության համար պետք է հատուցել խնամքոտ վերաբերմունքով: Գրքի երջանկությունն էլ այն է, որ երկար օգտագործվի, որպեսզի ունենա ավելի շատ ընթերցողներ և կարողանա ավելի շատ բարիք գործել, գիտելիքներ ու երջանկություն պարգևել մեզ:



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

# ԾԻՏԸ ՄՇՈՒՇԻ ՄԵՋ

*ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ*

Դրսում մշուշ էր սառ,
Մութ էր, լույսը մարեց:
Մի ճնճղուկ եկավ,
Պատուհանիս թառեց:

Չկար երկինք, գետին,
Ծով էր, մշուշի ծով,
Նավ էր սենյակը իմ,
Նավ էր մի լողացող:

Պատուհանին կպած
Ծիտը դողում էր խեղճ.
Ես ուզեցի նրան
Առնել ափերիս մեջ:

Բայց նա չհասկացավ,
Թռավ... Էլ չեմ տեսնում,
Փափուկ մշուշի մեջ
Ձայնը էլ չի լսվում:

...Դրսում մշուշ էր խիտ,
Չկար հյուսիս, հարավ,
Մշուշի մեջ փոքրիկ,
Խեղճ ճնճղուկը կորավ:

# ԵՐԵԿՈ

*ՎԱԴԻՄ ԿՐԻՇՉԵՆԿՈ*

Արևն ահա սարին թիկնել
ու կանչում է.
— Երեխանե՞ր,
Տեսե՞ք, դաշտից հոտը եկավ,
Քուն են մտնում ծիտ ու կաքավ,
Չհոգնեցի՞ք խաղ ու պարից,
Շուտով մութը կելնի ձորից:—
Միշտ որ... Արևն էլ է չքվել,
Իր մոր գրկում քուն է մտել,
Մութը գալիս կուտակ-կուտակ
Ու փակում է փողոց ու բակ...
Ինչպես կուզեն Սոնան, Մարգոն,
Որ երկարի դեռ երեկոն,
Բայց ճամփեզրին լուսինը լուռ
Եղջյուրներն է ցցում իր սուր:

*Ուկրաիներենից թարգմանեց*
*ՎԱՐԴԳԵՍ ՊԱՐԱՅԱՆԸ*

# ՊԱՀԱԾՈՅԱՑՎԱԾ ՔԱՂԱՔԸ

Պահածոյացված քաղա՛քը... Հենց դրա մասին էլ ուզում եմ պատմել: Գիտեմ, հիմա դուք մտածում եք. պահածոյացված միրգ, միս, ձուկ, բանջարեղեն տեսել ենք, բայց քաղա՞ք...

Հեքիաթում ամեն ինչ էլ լինում է. դե, եթե անմահական ջուր է լինում և հրեղեն ձի, և քնած արքայադուստր, որ արթնանում է տարինե՜ր հետո, ինչո՞ւ չի կարող լինել պահածոյացված քաղաք:

Բանն էլ հենց այդ է: Մի քաղաք կար, որի թագավորն ու թագուհին պահածո շատ էին սիրում: Ուղղակի խելքները գնում էր պահածոյի համար: Նրանք նույնիսկ մեդալ էին սահմանել տարվա լավագույն պահածոյի համար: Իսկ այդ քաղաքում պահածո պատրաստում էին բոլորը՝ ծեր ու ջահել, կին ու տղամարդ: Բանն այնտեղ էր հասել, որ թարմ միրգ կամ բանջարեղեն ուտելը համարվում էր վատ ճաշակի նշան: «Ինչպե՜ս կարելի է,— ասում էին պալատական տիկնայք,— հում պոմիդոր, վարունգ, ծիրան, աստվա՞ծ իմ, որքան կոպիտ է հնչում դա: Հենց միայն այդքանը հերիք է»:

«Ուրի՜շ բան է պահածոն,— շարունակում էին տղամարդիկ,— ի՞նչը կհասնի աղաջրի մեջ դրված վարունգի համ ու հոտին»:




Մի անգամ այս քաղաքը եկավ մի օտարական: Հյուր եղավ քաղաքացիներից մեկի տանը: Նրա առջև դրեցին պանիր, բանջարեղեն, մրգեր՝ բոլորն էլ պահածոյացված: Եվ դեռ՝ ամառ օրով: Միակ ուտելիքը, որ դեռ պահածոյացված չէր, հացն էր: Բայց զգալի աշխատանք էր տարվում նաև այդ ուղղությամբ: Այս ամենը տեսնելով՝ հյուրը շատ զարմացավ: Բայց դեռ ավելի վատը կար. բոլորը իրենց տներն ու պատշգամբները վերակառուցում էին պահածոյի բանկայի ձևով: Վերակառուցվում էր և պալատը: Քաղաքում հիացական խոսք ու զրույցի առարկա էր դարձել թագավորի ու թագուհու նոր ննջասենյակը՝ այն ամբողջովին ապակուց էր, կլոր, իսկ պատերին նկարված էին մրգեր՝ ծիրան, խնձոր, տանձ: Իսկ և իսկ կոմպոտի բանկա: Ամբողջ էֆեկտն այն էր, որ այդպես էլ թվում էր. իբր թագավորն ու թագուհին լողում են կոմպոտի մեջ...

«Էղպե՜ս,— մտածեց օտարականը,— մարդ կա սիրուց է գժվում, մարդ կա՝ վշտից, սրանք էլ՝ ուտելուց»: Եվ օտարականը մնաց: Մնա, որպեսզի փրկի այդ քաղաքի գոնե երեխաներին: Այո, երեխաներն էլ արդեն սկսել էին պահածո-պահածո խաղալ... Նա տուն և հողամաս գնեց՝ փոքրիկ պարտեզով: Եվ որովհետև առավոտից երեկո խնամում էր, փխրեցնում, ջրում հողը, շուտով քաղաքի ամենալավ պարտեզն ու բանջարանոցը համարում էին նրանը: Այդտեղ մոտով անցնելիս քաղաքի բնակիչները նայում էին առողջ, կարմրաթուշ խնձորներին ու հասուն տանձերին, ասում. «Ի՜նչ պահածո կլինի, է՜»:

Մի անգամ օտարականը լսեց այդ և իր տան ճակատին մի ցուցանակ փակցրեց. «Այս տանը չի պատրաստվում ո չ մ ի պ ա հ ա ծ ո»: Ոչ մի պահածո բառերը ընդգծված էին կարմիր մատիտով:

Շուտով լուր տարածվեց, որ թագավորի աղջիկը ծանր հիվանդ է: Արքայադստեր հիվանդությունը մինչ այդ չտեսնված մի բան էր: Հրաժարվում էր ուտելուց, չէր ուզում պահածոյի երեսը տեսնել: Խեղճ արքայադուստրը գունատվել էր ու սմքել:

Թագավորը աշխարհի տարբեր կողմերից 100 բժիշկ հրավիրեց: Եկան բժիշկները, երկար քննեցին ու խորհրդակցեցին, բայց ճար չգտան: Շատ դեղեր տվեցին արքայադստերը, շատ սրսկումներ արեցին, բայց ոչինչ չօգնեց:

Հուսահատվեցին թագավորն ու

թագուհին, բժիշկները, ողջ քաղաքը:

Մի օր արքայադուստրը իր նաժիշտների խմբով զբոսնում էր: Անցնում էին օտարականի պարտեզի մոտով: «Ա՜յս ի՜նչ հաճելի բուրմունք է գալիս...»— կանգնելով ցանկապատի մոտ, ասաց արքայադուստրը:

— Գուցե քամին պահածոյի բո՞ւյր է բերում,— կարծիք հայտնեց նաժիշտներից մեկը:

— Մի՞թե ես ասացի պահածոյի,— զայրացավ աղջիկը,—մի՞թե հաճելի բուրմունք կարող է գալ




միայն պահածոյից: Սա ի՜նչ բան է:— Եվ նրա նոպան սկսվեց:

Սարսափահար նաժիշտները խառնվեցին իրար: Իրարանցումի վրա տնից դուրս եկավ օտարականը: Արքայադուստրը դիմեց նրան.

— Ես ուզում եմ իմանալ, թե որտեղից է գալիս հաճելի բուրմունքը, իսկ նրանք ասում են՝ քամին պահածոյի բույր է բերում:

— Պահածոյի՞,— կրկնեց օտարականը և մատնացույց արեց իր տան ճակատի ցուցանակը՝ «Ո՛չ մի պահածո»:

Ցուցանակը տեսնելով՝ արքայադուստրը զվարթացավ, նույնիսկ դեմքը վարդագունեց:

— Ո՞չ մի պահածո՞,— կարդաց նա,— դուք ուրեմն պահածոյով չե՞ք սնվում:

— Իհա՜րկե, ո՛չ,— ասաց երիտասարդը,— ինչո՞ւ սնվել պահածոյով, երբ կա բնականը:

— Բարի եղեք,— ասաց արքայադուստրը,— ի՞նչ բան է բնականը:

— Բնակա՞ն,— կրկնեց երիտասարդը,— բնականն այն է, երբ միրգը կամ բանջարեղենը եփված, պահածոյացված չէ:

Եվ երիտասարդը բոլորին ներս հրավիրեց, սեղան բաց արեց նրանց համար թարմ մրգերով ու բանջարեղենով: Արքայադուստրը ուրախությունից ծափ զարկեց:

— Ահա՛ թե որտեղից էր գալիս հաճելի բուրմունքը,— ասաց նա,— ցույց տալով սեղանը:

Երիտասարդ օտարականը իր ձեռքով թարմ վարունգ, պոմիդոր դրեց արքայադստեր ափսեն:

Եվ նաժիշտների զարմացած հայացքների տակ աղջիկը... կերավ: Այո՛, այո՛, նա, որ օրերով մի փշուր իսկ բերանը չէր դնում, չնայած բոլորի թախանձանքին: Այդ տեսնելով, նաժիշտներն էլ վախվխելով սկսեցին փորձել:

— Կարծես թե վատ չէ,— քրթմնջացին նրանք,— դե, եթե արքայադուստրն է հավանում:

Երբ գնալու ժամանակը եկավ, արքայադուստրը ասաց նաժիշտներին.

— Ես ո՛չ մի տեղ չեմ գնա այստեղից, գնացեք և ասե՛ք պալատում:

Խնդրանքները չօգնեցին: Նաժիշտները ստիպված եղան պալատ վերադառնալ առանց նրա: Այնտեղ ամեն ինչ պատմեցին թագավորին ու թագուհուն: Նրանք էլ իսկույն վազեցին օտարականի տունը: Եվ ի՞նչ՝ տեսան իրենց դուստրը այն հին, լավ օրերի նման ժպտում է, խոսում: Կողքին էլ նստել է մի երիտասարդ, գեղեցիկ անծանոթ: Ծնողներին տեսնելով, աղջիկը նրանց էլ հյուրասիրեց թարմ բանջարեղենով ու մրգով: Թագավորն ու թագուհին անակնկալի եկան, բայց վերջիվերջո՝ աղջկա սիրտը չկոտրելու համար:

Արդեն ուշ էր, և թագավորն ու թագուհին ցանկացան տուն գնալ: Արքայադուստրը նորից պընդեց իրենը. «Այստեղից ես ո՛չ մի տեղ չեմ գնա»:

— Այդ դեպքում գուցե նրա՞ն պալատ տանենք,— երիտասարդին ցույց տալով ասաց թագուհին:

— Ո՛չ,— հայտարարեց աղջիկը,— ուզում եմ այստեղ ապրել, ինձ համար հեռո՞ւ պահածոներից և ամե՜ն ինչ հրամցնող նաժիշտներից, ալարկոտ պալատականներից: Ուզում եմ ծաղիկները ջրել, միրգ քաղել, կերակրել շընիկին, մի բա՜ն անել վերջապես, չէ՞ որ պալատում ես առավոտից երեկո պարապ եմ:

— Ի՞նչ պիտի անես այստեղ մենակ, աղջի՜կս,— հառաչեց թագուհին, արդեն զայրացած երիտասարդ օտարականի վրա, որ կարողացել էր այդքան կարճ ժամանակում փոխել իր աղջկան:

— Ես մենակ չեմ,— ասաց արքայադուստրը,— նրա հետ եմ, իսկ դա մի՞թե խանգարում է, որ շարունակեմ մնալ ձեր աղջիկը:

Այստեղ միջամտեց երիտասարդ օտարականը.

— Նա ինձ հետ չի տխրի,— ասաց նա,— ես նրան կսիրեմ ու կպաշտպանեմ:

Եվ թագավորն ու թագուհին լսելով այս ամենը ու տեսնելով, որ արքայադուստրը ժպտալով համաձայնություն է տալիս նրա և սածին, լաց եղան մեծ-մեծ արցունքներով:

Թագավորը հրաման արձակեց ջարդուփշուր անել բոլոր պահածոները, որովհետև դրանք պատճառ դարձան, որ արքայադուստրը լքի պալատը:

Կարևորն այն է, որ փրկվեցին ոչ միայն արքայադուստրն ու պալատականները, այլև քաղաքի բոլոր բնակիչներն ու հատկապես երեխաները, նրանք, որ սկսել էին արդեն պահածո-պահածո խաղալ...

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



# ՄԵԿ ՏԱՏԱՆՈՒՄ՝ ՄԵԿ ՎԱՅՐԿՅԱՆՈՒՄ...

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

Երբ Մաքսվելն ավարտեց էլեկտրամագնիսական դաշտի իր տեսությունը, Հայնրիխ Հերցը գիմնազիայի առաջին դասարանում էր: Նա բոլոր առարկաները սիրում էր հավասարապես և սովորում էր գերազանց:

Հերցի ծնունդը այնքան էլ չուրախացրեց սենատոր հորը: «Երեխան երկար չի ապրի, թուլակազմ է»,— միաբերան հաստատեցին բժիշկները:

Բժիշկները ճիշտ էին. հիվանդությունները հետապնդեցին նրան ողջ կյանքում, հաջորդաբար ցավում էին ականջները, աչքերը, ատամները...

Տասնութ տարեկան էր, երբ որոշեց ինժեներ դառնալ: Որոշեց և անցավ գործի: Եղավ մի շարք տեխնիկական բարձրագույն հաստատություններում, լսեց և վիճեց ժամանակի խոշոր մասնագետների հետ: Եվ ահա մի օր, ինքն էլ չհասկացավ, թե ինչպես, գորվեց ֆիզիկայի և մաթեմատիկայի հորձանուտը:

Տեխնիկական հաստատություններում ֆիզիկայի, մաթեմատիկայի պրոբլեմներ չէին լուծվում: Այդ առարկաներն ավանդվում էին որպես ընդհանուր բնույթի գիտություններ՝ ինժեներական գործին պետք եկած չափով: «Սկզբնական շրջանում ինքս ինձ ասում էի, թե ավելի լավ է լինել միջակ ինժեներ, քան միջակ գիտնական, բայց հիմա զգում եմ, որ Շիլլերը ճիշտ է. «Եթե վախենում ես կյանքըդ վտանգել, ուրեմն հաջողության չես հասնի, այնպես որ ամենալավ զգուշությունը անհեթեթություն է»:

Մյունխենյան տեխնիկական դպրոցի դասախոսների համար հանելուկ մնաց իրենց լավագույն ուսանողի արարքը. մի առավոտ նա լքեց նրանց և հայտնվեց Բեռլինի համալսարանում:

Առաջին դասախոսը, որ գերեց Հերցին, Հերման Հելմհոլցն էր՝ Գերմանիայի ամենամեծ ֆիզիկոսը: Հելմհոլցը սիրեց իր նորեկին, սիրեց և իր սրածայր բեղերի տակից ժպտաց նրան:

— Ձերդ գերազանցություն,— այսպես դիմեց նրան Հերցը, մի քանի հանդիպումներից հետո,— ես փնտրում էի ձեզ:

Հելմհոլցի հայացքը ծանր էր տիրականորեն, իսկ էությունը տիրականորեն հոխանավոր:

Հելմհոլցը արդեն հիսունվեց տարեկան էր: Տարիներ շարունակ զբաղվել էր բժշկությամբ: Երեսուն տարի առաջ, Մայերից և Ջոուլից անկախ հանգել էր էներգիայի պահպանման ու փոխակերպման օրենքին և որոշել էր զբաղվել ֆիզիկայով: Այդ երեսուն տարիների ընթացքում նրա հայացքից չէր խուսափել ֆիզիկայի արդիական և ո՛չ մի պրոբլեմ:

Գերմանացի ֆիզիկոսներից նա առաջին տարվողն էր Մաքսվելի տեսությամբ և առաջին գնահատողը նրա արժանիքների: Մաքսվելի տեսության մեջ նրա համար փոխազդեցությունը պայմանավորող միջավայրի դերը անհերքելի էր, բայց որ այդ միջավայրը՝ «դատարկությունը» ներկայացնում էր որպես ֆիզիկական ռեալություն, Հելմհոլցի համար անընդունելի էր: Բանն այն էր, որ Հելմհոլցը գերմանացի մեծ փիլիսոփա Կանտի հետևորդն էր և հերքում էր աշխարհի ճանաչելիության հնարավորությունը: Այնպես որ հեռազդեցության հիմքում ընկած «դատարկություն» խորհրդավոր և անճանաչելի հասկությունը փոփոխելը նրան թվում էր ավելորդ, իսկ Ֆարադեյի գաղափարների մաքսվելյան մաթեմատիկական կերպավորումը՝ խորթ: Սակայն հետաքրքիրն այն էր, որ Հելմհոլցը ընդունում էր Ֆարադեյի փորձերից բխող արդյունքները: Ուրեմն որպեսզի իր փիլիսոփայական հայացքները հաշտեցներ Ֆարադեյի փորձերից բխող անվիճելի գիտական փաստերի հետ, Հելմհոլցը մշակեց իր սեփական էլեկտրադինամիկական տեսությունը:

Քանամյա Հերցը, բնականաբար, հետևեց իր ուսուցչին, բայց վառ պահեց դրանք բոլորը փորձով ստուգելու ցանկությունը:

Համալսարանի լաբորատորիայում սեփական ուժերով փորձ դնելու համար հարկավոր էր ֆակուլտետի ղեկավարության թույլտվությունը: Իսկ ղեկավարությունը թույլ էր տալիս փորձեր դնել նրանց, ովքեր մասնակցում էին մրցանակաբաշխությանը ներկայացված որևէ պրոբլեմի լուծման

աշխատանքներին: Պրոբլեմները շատ էին: Դրանցից մեկը, որի լուծմանը ձեռնամուխ եղավ Հերցը, էլեկտրական հոսանքի կինետիկ էներգիայով օժտված լինելու պրոբլեմն էր:

Արդյո՞ք էլեկտրական հոսանքն օժտված է կինետիկ էներգիայով:

Երբ Հերցն սկսեց իր առաջին ինքնուրույն աշխատանքը, անմիջապես պարզվեց, որ նա օժտված է բոլոր այն բարեմասնություններով, ինչ պետք է փորձարարին. համառություն, համբերություն, աշխատասիրություն, սեփական ձեռքով բարդ և պզտիկ գործիքներ պատրաստելու շնորհք:

Համալսարանի գիտական խորհրդի պլանով Հերցն իր աշխատանքը պետք է ավարտեր ինն ամսվա ընթացքում, բայց երեք ամիսը դեռ չբոլորած՝ նրա արդյունքներն արդեն ամփոփված էին:

Իսկ արդյունքներն, ինչպես սպասվում էր, հաստատեցին, որ էլեկտրական հոսանքը չի օժտված կինետիկ էներգիայով: Դա համընկավ Հելմհոլցի տեսակետին:

Մինիստրի հատուկ թույլտվությամբ երրորդ կուրսի ուսանող Հերցին իրավունք տրվեց պաշտպանելու իր դոկտորական դիսերտացիայով:

Զուտ տեսական բնույթի հետազոտություն էր այն և վերաբերում էր մարմինների պտույտին՝ մագնիսական դաշտում:

Հերցը լծվեց գործի, աշխատեց գիշեր-ցերեկ, մեծ վերելքով:

Այն, ինչին հասավ նա, օրիգինալ մաթեմատիկական հյուսվածքով օժտված ֆիզիկական տեսություն էր, որը վեր էր հանում մագնիսական դաշտում պտտվող մարմնի վարքն ամփոփող որոշ առանձնահատկություններ:

Եզակի դեպք. ուսանող Հայնրիխ Հերցին շնորհվեց դոկտորական աստիճան:

Շուտով դոկտոր Հերցը լքեց Բեռլինի համալսարանը:

Մի քանի տարի անց հայտնաբերեց նաև Մաքսվելի կանխագուշակած էլեկտրամագնիսական ալիքները և Ֆարադեյ-Մաքսվել կույգի կողքին գրավեց իր արժանի տեղը:

Հերցի նոր հայտնագործությունը ցնցեց ամբողջ գիտական աշխարհը: «Հերցի ալիքների» էությունը հասկանալի դարձավ շատերին:

Աշխարհի տարբեր ծայրերից եկող նամակները մի բան էին ասում միայն. արդյոք հնարավոր չէ՞ ստեղծել կապի նոր համակարգ՝ առանց սյուների, առանց հաղորդալարերի:

Որքան էլ զարմանալի թվա, մեծ գիտնականը այդ կարծիքին չէր, դեռ ավելին, նա հայտարարեց, որ ռադիոալիքների հետագա հետազոտությունները ոչ մի օգուտ չեն կարող տալ:

Ի՞նչ կարող ես անել. Մաքսվելը կանխագուշակեց, ինքը հայտնագործեց, կիրառության մեջ էր դրնում մեկ ուրիշը:

Իր տասնյոթամյա գիտական գործունեության ընթացքում Հերցն արժանացավ գրեթե ամեն տեսակ պարգևների, իսկ եռանդուն երախտապարտ հետնորդները հիշատակն հավերժացնելու համար նրա անունով կոչեցին տատանման հաճախականության միավորը՝ մեկ տատանումը՝ մեկ վայրկյանում (կրճատ գրվում է Հց): Դժվար թե այսօր աշխարհում գտնվի մի մարդ, որ օրը մի քանի անգամ ռադիոյով և հեռուստատեսությամբ չլսի հաճախականության այդ միավորը:

Հերցը ավարտին հասցրեց Ֆարադեյի սկսած գործը: Եթե Մաքսվելը Ֆարադեյի գաղափարներին տվեց մաթեմատիկական ձևակերպում, ապա Հերցն այդ գաղափարները դարձրեց «տեսանելի» և «լսելի» էլեկտրամագնիսական տատանումներ:

Գիտե՞ք որ

## ՏԻԿՆԻԿՆԵՐԻ ԵՐԿԻՐ

Վաղուց ի վեր տիկնիկները Ճապոնիայում մանուկների զբաղվածության առարկաներ չեն միայն. տիկնիկներ կան, որոնք համարվում են, թե տունը հիվանդություններից պաշտպանում են, ոմանք տանը երջանկություն են բերում, տիկնիկներ էլ կան, որ դրվում են մանկան օրորոցի մեջ՝ մանկանը չար աչքից պաշտպանելու համար:

Ճապոնիայի արտադրած տիկնիկները աշխարհում հռչակված են իրենց նրբությամբ ու գեղեցկությամբ: Բուն Ճապոնիայում ամենամեծ ժողովրդականություն վայելող տիկնիկը խնձորկու պարը կատարող տիկնիկն է: Այս տիկնիկը ստեղծվել է երկու հազար տարի առաջ Կյուսյու կղզում: Ճապոնացի երեխաները սիրում են նաև փայտյա գունագեղ տիկնիկներ, որոնք տարածված են հատկապես Խոնսյու կղզում: Լավն են «կայսրուհին» սերիայի տիկնիկները: Սրանց զգեստները պատրաստվում են մետաքսից ու թավշից, իսկ երեսը ծածկում են մի հատուկ նյութով՝ ստացված սադափի և ներկի խառնուրդից, որից տիկնիկի դեմքը շողշողուն փայլ է արձակում, տալով նրան թագուհու տեսք:



## ԲՈԼՈՐԴ ԴԵՊԻ ՆԱՎԱԽՑԻԿ

Տարիներ առաջ «Տիտանիկ» հսկա շոգենավը բախվեց սառցասարին: Զոհվեցին հարյուրավոր մարդիկ: Եվ ոչ այն պատճառով, որ «Տիտանիկը» արագ սուզվեց. ուղևորներին փրկելու համար բավական ժամանակ կար... չբավականացրին փրկամակույկները...

«Տիտանիկի» կործանումից հետո նախագծողները նավերի վրա սկսեցին նախատեսել այնքան փրկամակույկ, որքան հարկավոր էր բոլոր ուղևորներին տեղավորելու համար:

Բայց ահա, ոչ այնքան վաղուց նոր վթար տեղի ունեցավ. բախվեցին ժամանակակից «Ստոկհոլմ» և «Անդրեա Դորինա» խոշոր օվկիանոսային նավերը: «Անդրեա Դորինա»-ն խորտակվեց: Եվ եթե ուրիշ նավեր օգնության չհասնեին, դարձյալ հարյուրավոր ուղևորներ կզոհվեին: Ի՞նչ է, բավականաչափ փրկամակույկնե՞ր չկային: Կային... Բայց նավն այնքան էր թեքվել կողքի, որ փրկամակույկները հնարավոր չէր ջուրն իջեցնել: Եվ ահա նախագծողները սկսեցին նոր ուղիներ որոնել և մտածեցին նոր փրկամիջոց՝ լողացող նավախցիկ:

Խցիկը տեղադրված է նավախելում: Վթարի դեպքում բոլոր ուղևորները արագ իջնում են այնտեղ և ամուր փակում դռնակը: Ցուրաքանչյուրը կապվում է իր մահճակալին: Վառոդալիցքի միջոցով խցիկը ծովն է նետվում:



Լրացավ մանկագիր Հոբոս-Աւպոր ծննդյան 70-ամյակը: «Պիոներ» ամսագրի խմբագրությունը նրան շնորհավորում է և ցանկանում քաջառողջություն ու ստեղծագործ ա կ ա ն հաջողություններ:





## ԱՐՋԸ ՈՐՄՆԱԴԻՐ

— Շուտով կգա ձմեռն ահեղ,
Իսկ ես չունեմ քնելու տեղ,—
Փնթփնթում է բրդոտը ծեր,
Եվ որոշում տուն կառուցել:
Բայց երկու շարք դեռ չշարած,
Փուլ է գալիս պատը հանկարծ,
Ու վրդովված արջը նորից
Մեծ քարեր է բերում ձորից:
Բայց արի տես,
Առաջվա պես
Չի հարմարվում
Դրած քարը,
Փուլ է գալիս
Նորից շարը:
Մեր մրջյունը դիտում, դիտում
Ու մտքի մեջ այս է ասում.
«Տուն չես շինի, բրդոտ, երբեք,
Մեծ ուժի հետ խելք էլ է պետք»:

## ՍՊԻՏԱԿ ՎԱԳՐԵՐԻ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ

Հնդիկ գիտնականները ենթադրում են, որ երկրագնդի վրա մնացել է ընդամենը 35 սպիտակ վագր: Եվ նրանք բոլորը Մոհան սպիտակ վագրի և սովորական վագրուհի Ռադխայի սերունդներն են:

Մոտ քսան տարի առաջ հնդկական Ռևա իշխանության մահարաջան սպիտակ վագրերի լիակատար տնօրինությունն հանձնեց իր շքեղ, բայց լքված ամառային դղյակը: Սակայն շենքն այժմ դատարկ է, իսկ սպիտակ վագրի քոթոթներն արդեն ծնրացել են և իրենց վերջին օրերն են ապրում Դելիի, Կալկաթայի, Վաշինգտոնի և Բրիստոլի գազանանոցներում:

Կալկաթացի գիտնականներն այժմ փորձում են սպիտակ վագրերին բազմացնել արյան նոր խումբ ներարկելու միջոցով: Եթե փորձերն հաջողությամբ պսակվեն, ապա արդեն 1982 թվականին գազանանոցներում սպիտակ վագրի քոթոթներ կհայտնվեն: Իսկ անհաջողության դեպքում սպիտակ վագրերի ցեղը, որն սկիզբ է առնում լեգենդար վագր Մոխանից, աստիճանաբար կանհետանա:

ԴՄԻՏՐ ՅԱՐԻՄՈՎ

(բուլղար գրող)

# ԸՆԿՈՒԶԵՆՈՒ ՍՏՎԵՐԸ

*Մի առավոտ Պյոտր պապը էշը լծեց, սայլակի մեջ դատարկ դույլեր դրեց, երեխաներին էլ նստեցրեց ու ճամփա ընկավ: Երբ խաղողի այգի հասան, արագաշարժ Ժելյազա տատիկը բեռը իջեցրեց սայլակից ու տարավ դրեց ճյուղատարած ընկուզենու տակ, որ ինքն էր վաղուց, շա՜տ վաղուց, այգու ծայրին, ճանապարհի մոտ տնկել: Ընկուզենու բունն այնքան հաստ էր, որ Պետյան հազիվ էր գրկում:*

*Երեխաները դույլերը խաղող լցրին ու վազեցին ընկուզենու մոտ՝ ճոճանակ կապելու այն թոկով, որ պապը բերել էր էշին կապելու համար:*

*Մի կուշտ ճոճվելուց հետո, նրանք մի-մի բուռ ընկույզ հավաքեցին ու տարան այգու մեջտեղը տնկելու: Բայց այստեղ վրա հասավ Ժելյազա տատիկն ու սկսեց հանդիմանել.*

*— Ի՞նչ էլ ճարպիկ եք, բայց ընկուզենի տնկելու համար դեռ շատ փոքր եք... Չեք հասցնի ծերանալ, մեկ էլ կտեսնեք նրա բունը ձեր վզից հաստացավ:*

*— Հետո՞ ինչ, թող հաստանա,— տարակուսեց Պետյան:*

*— Այն, որ հենց ընկուզենու բունը դառնում է նրա տնկողի վզի հաստության, տնկողի վերջը գալիս է...*

*Երեխաները նստոտեցին նոր փորած փոսերի կողքին ու սկսեցին փուչ-տոուլ խաղալ: Նրանցից ամենամեծը՝ Պետյան, դարձավ տատիկին.*

*— Դա ճիշտ չէ:*

*Տղան մտածեց, որ տատիկի տնկած ընկուզենին վաղուց արդեն տատի վզից հաստ է, իսկ տատիկը ողջ է և առողջ: Ուրեմն, տատի ասածը հնարովի է:*

*— Դա ճիշտ չէ՜,— նորից բղավեց նա:*

*Տատիկն իսկույն հասկացավ, թե ինչումն է բանը, չիմացավ ինչպես համոզի թոռին, ասաց.*

*— Գնա պապի՛դ հարցրու: Նա էլ կասի, որ միայն ծերուկներն են ընկուզենի տնկում:*

*Այստեղ Պետյան հիշեց ծիծեռնակների դեպքը, երբ տատիկը թույլ չէր տալիս ձեռք տալ բնում եղած ձվիկներին, ասելով, թե ձեռք տվողի դեմքը պեպեններով կծածկվի, իսկ պապիկը տեղը-տեղին բացատրեց, թե ինչու չի կարելի ձեռք տալ նրանց:*

*Այս դեպքում էլ հաստատապես մի լուրջ պատճառ կա, որը Ժելյազա տատիկը չգիտի: Իսկ Պյոտր պապը գիտի և կբացատրի:*

*Լսելով երեխաների աղաղակները, պապը մոտեցավ նրանց.*

*— Տատը ճիշտ է ասում: Փոքրերը ընկուզենի չպետք է տնկեն, որովհետև չեն հասկանում, թե որտեղ և ինչպես պետք է տնկել: Ա՛յ, ինքնե՜րդ տեսեք...*

*Նա թոռներին տարավ հարևան այգու բարձր ընկուզենու մոտ.*

*— Հը՞: Որևէ բան նկատո՞ւմ եք:*

*Փոքրիկ Ժիվկան ու Ժելյազան ոչինչ չէին կարող ասել: Ա՛յ, թե ծառի տակ արջ նստած լիներ կամ գոնե իրենց էշը կանգնած լիներ: Իսկ Պետյան, որ պապիկից շատ բան էր իմացել բնության գաղտնիքների մասին, իսկույն նկատեց.*

*— Ընկուզենու տակի հողը բոլորովին լերկ է...*

*— Ճիշտ է: Ընկուզենին թանձր ստվեր է գցում, դրա համար էլ նրա տակ ոչինչ չի աճում: Դրա համար էլ ասում են, որ միայն ծեր մարդը կարող է ընկուզենի տնկել: Նա գիտի, որտեղ պետք է այն տնկել: Տեսնո՞ւմ եք, մեր ընկուզենին կանգնած է այգու հյուսիսային ծայրին, ճանապարհի ճիշտ կողքին, նրա ստվերը չի ընկնում խաղողի թփերին ու չի սպանում նրանց: Բացի այդ, ձեր ընկուզենիները ծիլ չեն արձակի, որովհետև վաղուց չորացել են, և միայն կփտեն հողում:*

Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ԳՐԱՄԵՔԵՆԱ



Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՎՄԱՍՅԱՆԻ

Գրամեքենա ստեղծելու առաջին փորձն արել է անգլիացի Հենրի Միլը 1714 թվականին, սակայն տեխնիկական անկատարության հետևանքով այն չարդարացրեց իրեն և շուտով մոռացվեց: 19-րդ դարի առաջին կեսում տարբեր երկրների գյուտարարներ ձեռնամուխ եղան գրամեքենա պատրաստելու գործին, բայց նրանց ստեղծած մեքենաները ծանրաշարժ էին և օգտագործման համար ոչ պիտանի:

1864 թվականին ավստրիացի ատաղձագործ Պետեր Միթերհոֆերը կառուցեց առաջին՝ աշխատանքի համար պիտանի փայտյա գրամեքենան, որը գործում էր այժմյան գրամեքենայի սկզբունքով: Այդ գրամեքենան ներկայումս պահվում է թանգարանում և չնայած իր զառամյալ հասակին՝ այժմ էլ պիտանի է:

1867 թվականին դանիացի Մալինգ Հանսենը կառուցեց մեքենագրող գունդ, որը ներկայացնում էր յուրահատուկ գրամեքենա: Նույն թվականին գրամեքենա կառուցվեց նաև Ամերիկայում Կ. Գլայդենի, Լ. Սոուլի կողմից: Այդ գրամեքենան ուներ շարժական տառալծակներ և սահնակ:

1874 թվականին ճակատագրի հարվածները և կարիքը ստիպեցին Գլայդենին իր գյուտի արտոնագրային իրավունքը վաճառել հրացանի և կարի մեքենայի «Ռեմինգտոն և որդի» ամերիկյան ֆիրմային: Հետագայում կատարելագործելով այն, ֆիրման մեծ քանակությամբ գրամեքենա արտադրեց:

Այդ գրամեքենաները ունեին այն թերությունը, որ մեքենագրողը չէր կարողանում կարդալ և հետևել մեքենագրվող տողին, որովհետև տառալծակները տեղադրվում էին ուղղահայաց և մեքենագրվող տողը մնում էր թաքնված:

1896 թվականին Ռեմինգտոն և Ունդերվուդ ամերիկյան ձեռնարկատերերի միջև ծավալվում է մրցակցության սուր պայքար:

Գրամեքենայի կառուցվածքի էական բարելավում մտցրեց ամերիկահպատակ գերմանացի Ֆրանց Վագները: Նրա կատարելագործած գրամեքենան կոչվեց «Ունդերվուդ», որը և համարվում է արդի գրամեքենաների նախորդը:

1900 թ. Գերմանիայում թողարկվեց «Էրիկա» գրամեքենան, որը խախտեց ամերիկացիների մինչ այդ ունեցած մենաշնորհը: Այդ ժամանակից սկսած՝ տարբեր երկրներում թողարկվեցին 300-ից ավելի զանազան կառուցվածքի, համակարգի և մակնիշի գրամեքենաներ, դրանք նպաստում էին մեքենագրության արտադրողականության բարձրացմանն ու գրամեքենայի արտաքին տեսքի բարելավմանը:

Մեր երկրում առաջին գրամեքենան արտադրվեց 1928 թ. Կազանի մեխանիկական արհեստանոցում և կոչվում էր «Յանալիֆ»: 1982 թվականից սկսվեց «Լենինգրադ» գրամեքենայի սերիական արտադրությունը: Այնուհետև մեր

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Երգ է ասում անվերջ,
Ոչ ցավ ունի, ոչ՝ վիշտ,
Գնում է ու գնում,
Բայց իր տեղում է միշտ:

(ղոխստ)

Ջյուն ու կրակ իրար կողքի,
Ապրում են հաշտ նույն մառանում,
Ու ոչ ձյունն է հալվում շոգից,
Ոչ կրակն է ցրտից մարում:

(ղոմոցատռ)

Լույս է տալիս իսկական,
Բայց լույս չունի սեփական:

(ջվռալ)

Ես ունեմ մի ընդունիչ,
Որ լսում է ամեն ինչ,
Բայց գաղտնապահ է սաստիկ,
Նա չի ասի քեզ ոչինչ:

(ծյուիտ)

երկրի տարբեր գործարաններ թողարկեցին մեծ սահնակով գրամեքենաներ, ինչպես «Մոսկվա», «Բաշկիրիա», «Ուկրաինա»: Դյուրակիր գրամեքենաներից հայտնի են «Մոսկվա»-ն և «Կիև»-ը: Վերջերս սկսվեց ճամփորդական «Զեյա» գրամեքենայի արտադրությունը:

1968 թվականից Էրֆուրտի (ԳԴՀ) «Օպտիմա» գրամեքենաների գործարանը արտադրում է հայտնի «Օպտիմա», որը ըստ տեխնիկական սարքավորման և աշխատանքի մեջ ցուցաբերած հուսալիության ամենակատարյալներից մեկն է և ունի բազմապիսի հարմարանքներ:

Հետաքրքրական է, որ գրամեքենայի գյուտից հետո սկզբնապես տղամարդիկ և կանայք հավասարապես աշխատում էին գրամեքենայի վրա: Միայն հետագայում մեքենագրությունը դարձավ կանանց մասնագիտություն: Այժմ չկա մի հիմնարկ, ձեռնարկություն և կազմակերպություն, որ չօգտվի գրամեքենայից: Այն օգտագործվում է ոչ միայն մեքենագրուհիների, այլև գրողների, լրագրողների, գիտաշխատողների կողմից, որովհետև գրամեքենայի առավելությունը հասարակ գրչի կամ ինքնահոսի համեմատությամբ ակնհայտ է:

*Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆՑ*

# ԲՈՒՅՍԵՐԻՑ՝ ԹԱՆԿԱՐԺԵՔ ՀՅՈՒԹԵՐ



## ԳՈՒՏԱՊԵՐՉ

Ձեզ լավ ծանոթ թենիսի գնդակը և գույնզգույն շատ թեթև խաղալիքներ, որոնք լողում են ջրի երեսին, պատրաստվում են մի նյութից, որը կոչվում է գուտապերչ: Այդ նյութը հայտնաբերվել է Չինաստանում և կա նաև Կովկասում՝ էյկոմմիայի ծառի տերևների մեջ: Այդ ծառի աշնան դեղնած տերևները ավելի հարուստ են գուտապերչով, քան ամռան կանաչ տերևները: Եթե մենք էյկոմմիայի տերևը կիսենք և հեռացնենք այդ կեսերը, կնկատենք նրանց մեջ գուտապերչի սպիտակ, բարակ, ձգվող թելերը: Գուտապերչը օդի, ջրի, թթուների ներգործությանը չի ենթարկվում: Գուտապերչ է հայտնաբերված նաև Կովկասի սարերում տարածված իլենի կոչված թփերում:

Մեզ շրջապատող իրերը՝ գրասեղանը, գրամեքենան, դաշնամուրը, հեծանիվը և այլն, արտաքին հաճելի փայլ ունեն: Իրերին փայլ տվող նյութը կոչվում է լաք, իսկ լաքը յուղի կամ սպիրտի մեջ լուծված խեժն է:

Հին ժամանակներից սկսած՝ Չինաստանում լաք էին ստանում տունգ կոչվող ծառից: Տունգը շատ բարձր բուն ունի և լայն տերևներ, թփանման մեծ պտուղներ, որոնք թունավոր են: Այդ ծառի խեժից պատրաստված լաքը շատ դիմացկուն է ու չի քայքայվում ջրերի և թթուների ազդեցությունից: Դրանով պատում են ավտոմեքենաները, սավառնակները, նավերի ջրում սուզվող մասերը, կանայան ռադիոսարքավորումներ և այլն: Տունգի լաքի երկրորդական տեսակը օգտագործվում է պահածոների տուփերը, կրկնակոշիկները և կենցաղի այլ իրերը փայ-

*ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՐԳՍՅԱՆ*

Երկու պտուղ հանրահայտ
Ունեն ամուր բնափայտ,
Մեկն իր փայտին է ծածկում,
Մյուսն իր փայտով է ծածկվում:

(ծիրանը ու տանձի)



Ունի պատեր, չունի դուռ,
Մեջը՝ լիքը կուտ ու ջուր,
Ջուրը պինդ է, շատ համով,
Կտրվում է դանակով:

(ձմերուկ)

## ՕԳՏԱԿԱՐ ԽՈՐՀՈՒՐԴ

Մի շատ գեր ու շատ հարուստ մարդ դիմում է ռուս նշանավոր բժիշկ Ս. Բոտկինին և խնդրում՝ խորհուրդ տալ, թե ինչ անի, որ նիհարի, ազատվի ավելորդ քաշից, գանգատվում է, որ մինչև այժմ ում դիմել է, օգնել չեն կարողացել...

— Ես ձեզ կտամ մի խորհուրդ,— ասում է Բոտկինը,— որը անպայման կօգնի. սնվեք օրը մեկ ռուբլով, պայմանով, որ այդ ռուբլին վաստակած լինեք ինքներդ:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

լեցնելու համար: Տունգի սերմերը պարունակում են 50 % յուղ, որից ստանում են թանկարժեք էմալ:

Ծիրանի, դեղձի և այլ ծառերի բների վրա շատ ենք տեսնում խեժի կուտակումներ և երբեմն էլ համտես անում այն: Ծառերի խեժի առատ կուտակումը տեղի է ունենում հատկապես գարնան ամիսներին, երբ ծառի արմատները հագեցվում են ջրով: Գարնանը բողբոջների բացվելուց առաջ, ծառի արմատներում և ցողունում կուտակված օսլան դառնում է շաքար և լուծվում ջրի մեջ: Այդ շաքարաջուրը ծառի բնում եղած վերընթաց անոթներով բարձրանում է վերև, սնում նոր բացվող բողբոջները և տերևները:

Բողբոջման այդ շրջանում է, որ ծառերի բների վրա եղած ճաքերից դուրս է հոսում խեժը:

Ծառի բնի վերքերից հոսող խեժով խցանվում են ծառերի վերքերը: Կեչու մեկ ծառից կարելի է ստանալ չորս դույլ խեժ: Ծառերի խեժից են ստանում պանապան բալզամները, կանիֆոլը, սկիպիդարը և այլ նյութեր: Սկիպիդարը օգտագործվում է բժշկության մեջ, տպագրական գործում, որպես ներկերի և լաքերի լուծիչ: Կանիֆոլից պատրաստում են լինոլեում, լաքեր, օճառ, էլեկտրամեկուսիչ նյութեր:

Հազարամյակներ առաջ ծառերի խեժը կուտակվելով կավահողերի և ավազահողերի մեջ, ժամանակի ընթացքում վերածվել է մի թանկարժեք քարի՝ դարձել է սաթ:



# ՍԱԹ

Շատ լեգենդներ կան սաթի առաջացման մասին: Ըստ լեգենդներից մեկի, հերոսների համար թափված տաք արցունքի կաթիլները քարացել, դարձել են սաթ:

Ըստ մի այլ լեգենդի, սաթն առաջացել է ծովի փրփուրից: Տարածված է մի ուրիշ լեգենդ ևս, համաձայն որի սաթը գեղեցկուհի Գալենայի քարացած արցունքն է. մի գիշեր նրան առևանգել է ծովի աստվածը: Օվկիանոսի խորքում փակված, իր հարազատ հողից ու սիրած տղայից հեռու՝ գեղեցկուհին արտասվել է, արտասվել, արցունքները քարացել, դարձել են սաթ:

Մոտավորապես 35—40 միլիոն տարի սրանից առաջ, երկրաբանական այն ժամանակաշրջանում, որը կոչվում է օլիգոցեն, Բալթիկ ծովի հարավային ափերը պատված են եղել սաղարթախիտ, փշատերև ծառերի փարթամ անտառով: Տաք եղանակին ծառերից հոսող խեժը լցվել է հողի մեջ, ժամանակի ընթացքում քարացել ու դարձել սաթ:

Սաթի կտորները պանապան մեծության են լինում: Դրանցից ամենախոշորը կշռում է մոտ 7 կիլոգրամ: Սաթի բնական կտորների մեջ պահպանվել են հին ժամանակներից մնացած ճանճեր, որդեր, սարդեր, մոծակներ, երբեմն էլ՝ ծաղիկներ:

Սաթի մեջ պահպանված կենդանական մնացորդների օգնությամբ արդեն ուսումնասիրված են այն ժամանակվա 500 տեսակի բզեզներ, 60 տեսակի մրջյուններ, 450 տեսակի երկթև միջատներ և բազմաթիվ սարդեր:

Սաթը հնագույն ժամանակներից սկսած իր վրա է հրավիրել մարդկանց ուշադրությունը: Այն հիշատակվում է Հոմերոսի «Ոդիսական»-ում՝ որպես միակ թանկարժեք քարը:

Այս քարը մեծ կիրառում է գտել Հռոմեական կայսրության ժամանակ: Պլինիուսի վկայությամբ՝ այն ժամանակ սաթից պատրաստված մի աննշան իր ավելի թանկ արժեր, քան ստրուկը: Հարուստ չինացիները Բիրմայի սաթը կրակն էին նետում՝ սենյակը բուրմունքով լցնելու համար:

Սաթից պատրաստված բազմաթիվ գեղեցիկ իրեր են պահպանվում Կրեմլի Զինապալատում:

Պուշկինոյում՝ Լենինգրադի մոտ, Եկատերինա 2-րդի պալատում կար մի սենյակ, որի պատերը ներսից երեսպատված էին բազմագույն սաթե խճանկարով ու շրջանակներով:Սաթը կարևոր կիրառում է գտել և քիմիայում: Նրա թթուն շատ կարևոր դեր է խաղում լաքերի ու ներկերի արդյունաբերության մեջ:

Այս քարն աշխարհում բավականին մեծ տարածում ունի: Այն հանդիպում է Ռումինիայում, Սիցիլիայում, Վերին Բիրմայում, Դնեպրի ափերին, Սախալինում, Ղազախստանում:

Սովորաբար սաթը հավաքում են մեծ ալեկոծությունից հետո, երբ նրա կտորները լավ են երևում ծովափի ավազի հարթ մակերևույթի վրա:

Սաթի խոշոր հանքավայրը գտնվում է Բալթիկ ծովի ափին՝ Կալինինգրադ քաղաքի մոտ, ուր և աշխատում է մի հսկայական կոմբինատ: Այստեղ մեքենայացված եղանակով հսկայական քանակությամբ հող ու ավազ է փորվում ու լվացվում: Յուրաքանչյուր խորանարդ մետրից ստացվում է մեկ կիլոգրամից ավելի սաթ: Այժմ տարեկան արտադրվում է մինչև 500 տոննա սաթ: Սաթից պատրաստում են ժամացույցների շրջանակներ, շախմատի ֆիգուրաներ, ապարանջաններ, կարդեր, ծխամորճեր և այլ իրեր:

ԱՐՓԻԿ ՋԱՐՅԱՆ

Մ. ԿԻՍՏԱՆՈՎԻՉ



# Դայակները գազանների և թռչունների աշխարհում

Նկ. ՌՈՒԲԵՆ ԹՈՒՄԱՍՅԱՆԻ

## ԶՈՒԲՐԱՅԻՆ ԿԱՐԳՈՒԿԱՆՈՆ

...Ուղեկցող Պյոտր Իվանովիչի հետ զգուշորեն առաջ շարժվելով, հասանք մի մեծ մարգագետնի, որն արևի տակ փայլում էր գույնզգույն ծաղիկներով և թավ կանաչով։ Մեր դիմացը, անտառեզրին, անանցանելի, բայց ոչ բարձր կաղնուտի մի շերտ կար։ Անաղմուկ թափանցեցինք նրա խորքը և թաքնվեցինք։ Մեր անտառում տիրող մթությունից հետո արեգակով ողողված մարգագետինը աչք էր կուրացնում։

Բայց ո՞ւր են զուբրերը։ Հարցական նայեցի ուղեկցողիս։ Նա ձեռքը աջ մեկնեց. մարգագետնի հեռավոր ծայրում իսկապես ինչ-որ բան շարժվում էր։ Սակայն զուբրի նման չէր։ Զուբրը մեծ կենդանի է, ցուլի չափ։ Այսպիսի խոտի մեջ նա նույնիսկ պառկած չի կարող աննկատ մնալ։ Հեռադիտակով սկսեցի դիտել։

Ա՜յ քեզ բան։ Ախր դրանք մոտ տասն են։ Եվ ինչպե՞ս անմիջապես չնկատեցի։ Բայց դրանք ի՞նչ զուբրեր են որ, մանր են, հորթի չափ։ Եվ բոլորը տարբեր են։

— Հենց հորթեր են,— պարզաբանեց Պյոտր Իվանովիչը։— Այստեղ զուբրերի մանկապարտեզն է։ Միայն փոքրերն են։

— Իսկ մեծե՞րն ուր են։

— Հիմա նրանց հարսանիքների շրջանն է։ Ժառանգների մասին չեն էլ հոգում։ Նրանց հիմա մոտենալը վտանգավոր է։ Իսկ փոքրիկ զուբրերը առանց ծնողների էլ լավ են զգում իրենց, արդեն մեծացել են։ Կաթի կարիք էլ չեն զգում, խոտով են կերակրվում։

Ծոգը կամաց-կամաց թուլանում էր։ Փոքրիկ զուբրերը անտառի ստվերում որոճալուց ձանձրացած, դուրս վազեցին մարգագետին և սկսեցին զվարճանալ։ Մեկ պոչերը խողովակաձև ոլորած՝ դես-դեն են վազվզում, մեկ պոզահարում են իրար, մեկ էլ տեսար վազքով թռչում են իրար վրա։ Իսկական հորթուկներ։

— Այնպես է պատահում, որ մայր զուբրը երկու ձագ է կերակրում,— բացատրում է ուղեկցողս։— Մեկն իրենն է, մյուսն՝ ուրիշինը։ Մյուսի կաթը ըստ երևույթին չի հերիքում։ Պատահում է նաև, որ փոքրիկ զուբրերը իրենց մայրերին չեն ջոկում, մեկ մի մայր են ծծում, մեկ՝ մի ուրիշ։ Գուցե էգ զուբրերը հարազատ քույրեր են կամ՝ ընկերուհիներ։ Այսպիսի բան էլ կարելի է դիտել, ճիշտ է՝ հազվադեպ, որ մի մայր զուբրին երբեմն երեք հորթուկ է ծծում, որոնցից երկուսը՝ օտարներ։ «Փոքր են, բայց խորամանկ։ Իր ձագը մոր կրծքին կողքից է մոտենում, իսկ օտարը՝ ետևի կողմից է կրծքին հարմարվում։ Գլուխը խոթում է ոտքերի արանքն ու կաթն անուշ անում։ Մայր զուբրը նրան չի էլ տեսնում։ Իհարկե, ոչ բոլոր մայր զուբրերն են այդքան բարի։ Ում կաթը քիչ է, ուրիշի ձագին մոտ չի թողնում։ Եթե մայր զուբրը մեռնի կամ սպանվի, փոքրիկ զուբրը չի կորչի։ Նրա համար միշտ էլ հոգացող մայր կգտնվի։

Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ

---

Սկիզբը՝ № 11։



# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 5. ՄԱՐԴԸ ԵՎ ՖՈՍՖՈՐԻ ԿԵՆՍԱԵՐԿՐԱՔԻՄԻԱԿԱՆ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ

Ֆոսֆորը ամենակարևոր կենսածին տարրերից մեկն է, որը անպայմանորեն մտնում է կենդանի նյութի՝ հատկապես բջիջի կորիզի բարդ սպիտակուցների՝ կեղևասպիտակուցային և այլ օրգանական նյութերի բաղադրության մեջ: Այն միևնույն ժամանակ նյութափոխանակությունը կարգավորող մի շարք ֆերմենտների հիմնական մասն է հանդիսանում: Ֆոսֆորի մի շարք միացություններ ակտիվ մասնակցություն են ունենում օրգանիզմի կողմից էներգիայի կուտակման պրոցեսին: Մեծ քանակությամբ՝ մինչև 16—18 տոկոս ֆոսֆոր են պարունակում մարդու և կենդանիների ոսկորները: Նրա միացությունները կան նաև ուղեղի և կենդանիների գրահի հյուսվածքների բաղադրության մեջ: Ֆոսֆորի բացակայության դեպքում խախտվում է բջիջի էներգետիկան, անհնարին է դառնում սպիտակուցների համադրությունը:

Քիմիական այս տարրը մեծ նշանակություն ունի նաև նյութերի կենսաերկրաքիմիական շրջանառության պրոցեսում, ընդ որում, ի տարբերություն մյուս տարրերի, այդ շրջանառության մեջ ֆոսֆորի գազային ձևերը բացակայում են: Ֆոսֆորի միացությունները հսկայական դեր են խաղում ընդհանուր կենսոլորտի կայունության պահպանման գործում:

Մեր մոլորակի ֆոսֆորային հանքակուտակումները աննշան են և գիտնականների կարծիքով կսպառվեն առաջիկա 75—100 տարում: Մյուս կողմից մարդը մեծ քանակությամբ ֆոսֆորական միացություններ է օգտագործում, որոնց թափոնները նետվում են լճային ու գետային ջրերը և աղտոտում այն: Ներկայումս համաշխարհային օվկիանոսի աղտոտման գլխավոր պատճառներից մեկը ֆոսֆորական միացություններով հարուստ օրգանական թափոնները (միզանյութ, գոմաղբահեղուկ) և հողային հումուսն է, ինչպես նաև օրգանական նյութերի քայքայման հետևանքով առաջացած զանազան նյութերը: Հոսող ջրերի հետ քշվելով դեպի Համաշխարհային օվկիանոս, այդ նյութերի մեջ պարունակվող ֆոսֆորը երկար ժամանակով դուրս է մընում կենսաերկրաքիմիական շրջանառությունից: Դրա հետևանքով վերջին տասնամյակներում մեր շրջապատում ավելանում է ֆոսֆորի ընդհանուր քանակությունը, որը ներկայումս անվանում են «ֆոսֆորիտիզացիայի պրոցես»:

Ֆոսֆորի կենսաերկրաքիմիական շրջանառությունը պատկերված է ստորև տպագրված սխեմայում, որը կազմված է ըստ Օդումի հաշվարկների (տես՝ սխեմա):

Ինչպես ցույց է տալիս այդ սխեման, ֆոսֆորի հսկայական քանակություն է պարունակվում կենդանի նյութի՝ բույսերի և կենդանիների պրոտոպլազմայի բաղադրության մեջ, որը մի կողմից լրացվում է լուծվող ֆոսֆորատներից պրոտոպլազմայի սինթեզով, մյուս կողմից՝ ֆոսֆոր ռեդուկցող բակտերիաների գործունեության շնորհիվ: Բույսերը ֆոսֆորը ստանում են հողից՝ ջրի միջոցով, որպես անօրգանական ֆոսֆատներ և վերածում են ֆոսֆոր պարունակող բազմաթիվ օրգանական միացությունների: Կենդանիները ֆոսֆորը ստանում են անօրգանական ֆոսֆորատի ձևով, ջրից, որը խմում են, կամ ֆոսֆորի օրգանական և անօրգանական միացությունների ձևով՝ սննդի հետ միասին:

Այնուամենայնիվ, մեր մոլորակի ֆոսֆորի հիմնական պաշարները գտնվում են հանքային ապարների, գուանոյի (թռչնաղբ) նստվածքների և բրածո կենդանիների ոսկորների կուտակումներից առաջացած նախապատմական նստվածքներում:

Հողում սակայն, ֆոսֆորի քանակությունը աննշան է: Բարձր բերքի դեպքում ամեն տարի հողի յուրաքանչյուր հեկտարից հեռացվում է 50—60 կգ ֆոսֆոր, իսկ դրսից բնական ճանապարհով ֆոսֆորի մուտքը բացակայում է:Ահա թե ինչու, նույնիսկ ամենաբերրի հողերը մշակության ընթացքում





40—50 տարի հետո խիստ հյուծվում են, քանի որ սպառվում են դրանց ֆոսֆորի պաշարները: Եվ պատահական չէ, որ աշխարհի քիմիական արդյունաբերությունը տարեկան 18—20 միլիոն տոննա ֆոսֆորական պարարտանյութ է արտադրում:

Ֆոսֆորական պարարտանյութերի հուսալի աղբյուր են հանդիսանում անասնապահական և հատկապես թռչնաբուծական տնտեսությունները: Ամերիկացի գիտնականները հաշվել են, որ անասունների կերակրման համար օգտագործված ֆոսֆորի 10-ից միայն մի մասն է բաժին ընկնում մարդու սնդանին, երեք մասը մնում է հողի մեջ, իսկ 6-ը մըտնում է էքսկրեցիաների (կղկղանքներ) բաղադրության մեջ և եթե չի օգտագործվում որպես պարարտանյութ, ապա ողողվում-քշվում է Համաշխարհային օվկիանոս: Ինչպես ցույց են տվել հաշվարկները, մարդու ինտենսիվ գործունեության հետևանքով այդ ճանապարհով տարեկան ցամաքից հեռանում է 3—4 միլիոն տոննա ֆոսֆոր, ընդ որում այդ թիվը առաջիկայում է՛լ ավելի կմեծանա: Այդ է պատճառը, որ ծանծաղ և խորը ծովերի հատակում մեծ քանակությամբ ֆոսֆորական միացություններ են կուտակվում, ընդ որում այդ պրոցեսը ավելի արագ է կատարվում, քան ֆոսֆորական միացությունների վերադարձը կենսաբանական Մեծ Շրջանառություն՝ ծովային թռչունների և ձկների կենսագործունեության հետևանքով:

Ինչպես հայտնի է, հսկայական քանակությամբ ֆոսֆոր է պարունակվում ծովային կենդանիների մարմնում: Ձկնորսության և ծովային թռչունների որսի շնորհիվ դրա մի զգալի մասը ցամաք է վերադառնում: Այդ պրոցեսը ուժեղացել է հատկապես վերջին տարիներին. ձկան որսը համաշխարհային մասշտաբով 1948 թվականին 196 միլիոն տոննա էր, 1977 թվականին հասավ 88 2 միլիոն տոննայի: Այդ նյութի մոտ մեկ երրորդ մասը ամեն տարի ծախսվում է դաշտերի պարարտացման վրա, իսկ մնացածը օգտագործվում է որպես սնունդ: Դրա հետևանքով ֆոսֆորի միացություններով հարուստ օրգանական թափոնների հսկայական կուտակումներ են առաջանում մարդկանցով խիտ բնակեցված շրջաններում: Այն ժամանակ, երբ ածխածինը, ազոտը և ծծումբը ցնդում, հեռանում են դեպի մթնոլորտ, ֆոսֆորը օրգանական զանազան միացությունների հետ մնում է աղբանոցներում, մերձքաղաքային անբերրի դաշտերում:

Մարդկությունը պետք է ֆոսֆորի համաշխարհային պաշարներն այնպես օգտագործի, որ դրանք ռացիոնալ կերպով ծառայեն մարդուն և վնաս չպատճառեն կենսոլորտին:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*


Լույս է տեսնում 1928 թվականից


ՊԻՈՆԵՐ 12. 1978 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 05092: Պատվեր 2010: Տպաքանակ 52500: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 21 XI 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:



ԳԻՆԸ 15 կ
ԻՆԴԵՔՍ 77806
ՁՄԵՌՆ ՈՒ ԾԱՂԻԿԸ
ԳՐԻԳՈՐ ԷՂԻԿՅԱՆ
Եկավ մռայլ ամպեր մեծ,
Դեմքն արևի սևակնեց,
Վերից մաղեց պաղ շաղիկ,
Դաշտում տխրեց մի ծաղիկ.
— Ա՜խ, սևացավ մեր օրը,—
Հոգոց քաշեց նա խորը,—
Առանց պայծառ արևի
Մենք չենք ապրի երևի։
— Զո՞ւր ես, քույրի՛կ, սարսափում,
Խաղաղ, անհոգ ննջի՞ր դու,
Սերմ ես տվել մայր հողին,
Մահ չկա սերմ տվողին,
Հենց որ անցնի ցուրտը չար,
Նորից կգաս դու աշխարհ։